

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ՄԵՆԴԵԼՍՈՆԻ ԿՈՆՑԵՐՏԸ

Այն ժամանակ աստղերն այնքան շատ էին, որ գիշերները թափվում էին դիմացի լեռան վրա: Հենց այդ ժամանակ լրացավ իմ յոթ տարին և բոլորը միանգամից գլխի ընկան, որ ես մեծ մարդ եմ դառնալու, որովհետև գիշերները դուրս էի գալիս ու նայում լեռան գագաթին անձրևի նման թափվող աստղերին:

Մորաքույրներս աստղագետի ապագա էին գուշակում: Հայրս ու մայրս, շատ զարմանալի է, բայց միևնույն կարծիքին էին՝ նրանք գտնում էին, որ ես բանաստեղծ եմ դառնալու: Իսկ երբ բոլորը լռեցին, պապս սուսուփուս հանեց շվին, որի վրա ամբողջ կյանքում փորձել էր նվագել ու այդպես էլ ոչ մի անգամ ոչ մի կարգին մեղեդի չէր կարողացել դուրս բերել:

— Վերցրո՛ւ, տղա՛ս... Աշխարհում ամենաբարձր բանը երգն ու նվագն է:

Ես նայեցի պապիս աչքերին: Այնտեղ բոցկլտում էին գիշերները լեռան գագաթին ընկնող աստղերը: Լռությամբ վերցրի ու մոտեցրի շուրթերիս:

Այդ օրվանից խախտվեց մեր տան հանգիստը: Օր ու գիշեր փչում էի, մինչև որ մեր ավանում երաժշտական դպրոց բացվեց: Ես մորս նախաձեռնությամբ սկսեցի հաճախել ջութակի դասարանը:

Առաջին օրը պապս լսելով ջութակիս սայլի ճռճռոց հիշեցնող ճզզոցները, ձեռքը թափ տվեց և բեղի տակ խնդալով գնաց դեպի այգին: Իսկ երեկոյան, երբ երկուսով մնացինք, հանգիստ ասաց.

— Է՛, ի՞նչ պիտի լինի սրա վերջը՞...

— Չգիտեմ,—տխուր ասացի ես, որովհետև իրոք չգիտեի:

Սակայն մեր երկխոսությունը ոչինչ չէր կարող որոշել: Պապս ամեն օր ուղեկցում էր ինձ դպրոց, դպրոցից տուն, և ես նույն ժամերին, նույն դիրքով կանգնում էի պատշգամբում, նայում ծառերի վրա ծլվլացող ճնճղուկներին ու նվագում: Իսկ երեկոները պապս գոռվանքով վերցնում էր շվին, առանձնանում տան մի անկյունում և աշխատելով ոչ մեկին չխանգարել՝ նվագում էր իր կիսատ-պռատ նվագները:

Այսպես անցան տարիները: Ես արդեն վեցերորդ դասարանում էի: Պապս արագ ծերանում էր: Մի օր, պատշգամբի նույն տեղում, նույն ժամին, սովորականի նման պարապում էի: Նվագում էի Մենդելսոնի «Ջութակի կոնցերտը»: Պապս եկավ, սուս-փուս նըստեց կողքիս ու սկսեց ուշադրությամբ լսել: Երբ վերջացրի, մոտեցավ, լռությամբ վերցրեց ջութակը, ուշադրությամբ զննեց, ձեռք տվեց լարերին, շոյեց և մեկնեց ինձ: Աչքերը խոնավացել էին: Ես զարմացած նայեցի: Նրա աչքերում նորից փայլում էին լեռան վրա ամեն գիշեր ընկնող աստղերը:

— Հավանեցի՞ր,— ուրախացա ես, որովհետև միշտ անտարբեր էր եղել, գերադասել իր շվին:

— Մի՛ անգամ էլ նվագիր,—խընդրեց պապս:

Ես կենտրոնացա: Այգում թռչկոտող ճնճղուկները այլևս չէին շեղում ուշադրությունս: Ջութակի լարերը կարծես տաքացան, սկսեցին տրոփել մատներիս տակ:

Երբ վերջացրի, պապս նորից մոտեցավ, նորից զննեց ջութակը, ձեռքըս համբուրեց և արցունքները սրբելով հեռացավ:

Այդ օրվանից մեր տանը լռեց շվիի ձայնը: Ինչքան էլ նշանավոր օր լիներ, ինչ հյուր էլ ունենայինք, ինչքան էլ խնդրեին, պապս այլևս չէր նվագում: Իսկ երբ սկսում էի պարապել, նստում էր կողքիս, թախծոտ հայացքով նայում էր հեռուներին, լսում ջութակի մեղեդին:

Այնուհետև մենք շատ մտերմացանք: Պապս, որ շատ արագ ծերա-

նում էր, արդեն համոզված էր, որ ես երաժիշտ եմ դառնում։

Դարձյալ անցան տարիներ։ Նոր կոնցերտներ էի նվագում, ավելի լավերը, ավելի մեծերը։ Սակայն պապիս համար Մենդելսոնի «Ջութակի կոնցերտը» մնաց ամենալավը։ Ինձ համար՝ նույնպես։ Երբ տեսնում էի պապիս տխուր է կամ սոճնանային անձրևները թախիծով են համակում մեզ, պապիս հետ առանձնանում էինք, ու նվագում էի Մենդելսոնի «Ջութակի կոնցերտը»։

...Կոնսերվատորիայի երրորդ կուրսի ուսանող էի։ Հեռագիր ստացա, որ պապս ծանր հիվանդ է։ Անմիջապես գնացք նստեցի ու շտապեցի տուն։ Պապս, սպիտակ անկողնում, սպիտակ երկար մորուքով, քնած առաքյալի էր հիշեցնում։ Աչքերը փակ էին, շնչառությունն՝ ընդհատ։

Երեկոյան միայն նա բացեց աչքերը, տեսավ ինձ, ուրախացավ, բռնեց ձեռքերս, նայեց ուշադրությամբ։

Մենք հասկացանք միմյանց։

Ես մտա մյուս սենյակը։ Պատից իջեցրի հին, փոքրիկ ծիծաղելի ջութակըս, եկա։

Աշակերտի նման կանգնեցի պապիս մահճի առաջ և հուզմունքից դողդողացող մատներով նվագեցի Մենդելսոնի «Ջութակի կոնցերտը»։ Պապըս աչքերը փակած, ուշադիր լսում էր։ Երբ վերջացրի, կոպերը ետ գնացին և ես զարմանքով նորից տեսա, որ այնտեղ վառվում են իմ մանկության աստղերը, որոնք ընկնում էին լեռան վրա։

Պապս այդպես ժպտալով նայում էր անսահմանությանը։ Իսկ մենք լուռ արտասվում էինք։

## ՕԼԻՄՊԻԱԴԱ-80





Չիտացի առաջին կարգային բռնցքամարտիկ Վ. Սաֆրոնովը 1956 թվականին Մելբուռնում կայանալիք 16-րդ օլիմպիական խաղերին էր մեկնել որպես պահեստային։ Հիմնական թեկնածուն հիվանդացավ և Սաֆրոնովը մասնակցելով օլիմպիադային, տուն վերադարձավ որպես սպորտի վարպետ։ Նրա շահած մեդալը մեր հավաքականի օլիմպիական առաջին ոսկին էր, իսկ Սաֆրոնովը՝ բռնցքամարտի առաջին օլիմպիական չեմպիոնը։



18-րդ օլիմպիական խաղերում Եվրոպայի չեմպիոն հունգարացի Կայդի հետ մենամարտելիս սովետական բռնցքամարտիկ Վ. Բարաննիկովի մատը կոտրվեց։ Թվում էր՝ պայքարի ելքը վճռված է։ Բայց Բարաննիկովը տոկաց, կռվեց մինչև վերջ, և Եվրոպայի չեմպիոն Կայդը ընկավ ռինգի հատակին՝ նոկաուտ։

Բժիշկները թույլ չէին տալիս Բարաննիկովին շարունակելու պայքարը եզրափակիչում։ Բայց նա ռինգ ելավ, մենամարտեց և միավորներով միայն զիջեց հակառակորդին։ Բարաննիկովն արժանացավ արծաթե մեդալի։ Մեդալ, որը ձեռք էր բերվել մարզիկի խիզախության ու պողպատե կամքի շնորհիվ։




ԳՐԻԳՈՐ ՑԻՈՒՑԻՈՒՆՆԻԿ

Գլուխ առաջին

Կլիմկոն արթնացավ բոբիկ ոտքին ընկած սառը ցողից (քնի մեջ վեր էր թռել երևի) և իր վերևում տեսավ բացված-յասամանագույն երկինքը, որպիսին լինում է միայն աշնանը՝ արևածագին: Կլիմկոն ոտքերը կծկեց բաճկոնի տակ, որ տաքանան և փայտացած դողացող ձեռքերով ետ տվեց ծղոտը: Նա քնել էր դեզի տակ:

Բարձրացավ արմունկներին, որ ավելի լավ տեսնի ճանապարհը, որով պետք է գնար, և այնպես դողացրեց, որ ատամները կափկափեցին ամբողջ մարմինը պարուրած սաստիկ ցրտից: «Ոչինչ,—մտածեց,—մի լավ կվազեմ կտաքանամ»:

Ոտաբոբիկ էր նա, հագին՝ կարճ շալվար, հին մատրոսկա, որը մի ժամանակ երկնագույն էր եղել, իսկ հիմա գորշ էր, և քեռի Կիրիլլի կաշվե բաճկոնը: Այդ բաճկոնը, ինչպես քեռի Կիրիլն էր ասում, «հարյուր տարվա» էր և չէր պատռվել միայն այն պատճառով, որ կոշտացել էր վաղուցվա մազութից: Նրա վրա չէին ազդում ո՛չ անձրևը, ո՛չ ձյունը, ո՛չ էլ արևը: Բաճկոնից շոգեքարշի հոտ էր գալիս: Գիշերը սառչում էր, իսկ ցերեկը, երբ ծըխում էր արևի տակ, ավելի ուժեղ էր գալիս շոգեքարշի հոտը:

Որբանալուց ի վեր Կլիմկոն ապրում էր քեռի Կիրիլլի հետ: Ապրում էին նրանք երկաթուղայինների բարաքում, հենց գնացքի գծի մոտ:

Քեռի Կիրիլն մեծ «ФД» շոգեքարշի մեքենավար էր և աշխատանքի էր գնում՝ նայած երբ. մեկ առավոտյան, մեկ ցերեկը, մեկ գիշերվա կեսին, երբ Կլիմկոն քնած էր լինում: Վերադառնում էր միշտ անսպասելի, երկաթե արկղիկը ձեռքին, նվաղուն աչքերով ու ժպտում Կլիմկոյին.

— Ո՞նց է օգնականս: Գիշերը մենակ չե՞ս վախեցել:

Հետո քեռին լվացվում էր պղնձե մեծ թասի վրա, մատները չրթացնելով, երկար տրորելով ձեռքերը, չնայած թե՛ նա և թե՛ Կլիմկոն գիտեին, որ, միևնույն է, ձեռքերը չեն մաքրվելու:

— Ահա կմեծանաս, Կլի՛մո, ու հա՛յդա, մեզ մոտ՝ շոգեքարշ,—ասում էր քեռին:—Կսովորեցնենք, մեքենա-



**Գրիգոր Տյուտյունճնիկը նշանավոր ուկրաինացի արձակագիր էր, բազմաթիվ պատմվածքների, նովելների և վիպակների հեղինակ:**

**Հեղինակի այս վիպակը վերջերս արժանացավ Լեսյա Ուկրաինկայի անվան հանրապետական մրցանակի:**

վարի օգնական կդարձնենք ու էդպես կապրենք: Միասին աշխատանքի կգընանք, միասին կգանք... Թե չէ էսպես չեմ էլ տեսնում, երբ ես մեծանում:

Լվացվելուց հետո քեռին մաքուր շապիկ էր հագնում ու նստում սեղանի մոտ:

— Հապա մի էստե՛ղ տուր քերականությունդ, տեսնեմ ո՞նց է ուսումդ:

Դա Կլիմկոյի ամենամեծ ուրախությունն էր՝ քեռու առջև շարում էր խընամքով գրված տետրերը, իսկ ինքը դեսուդեն էր ընկնում. դուրս էր տանում կպրաջրով թասը, մաքրում հատակին թափված ջուրը և կամաց, թաքուն, որպեսզի քեռին շուռ չգա, ապուր էր լցնում նրա համար, որ ինքն էր եփել՝ տաք ու բուրավետ: Տետրերի համար նա չէր վախենում, բայց գրավորից մեկ-մեկ «միջակ» էր ստանում:

— Օ՜,—զարմանում էր քեռին, կըռանալով սեղանին:—Էս ի՞նչ է: Պետք է գրեիր «սառը», իսկ գրել ես «սաառը»-ն է:

Դրա համար Կլիմկոն շփոթված ասում էր.

— Մեծ դասամիջոցից հետո եղավ, քեռի՛, ձեռքերս լրիվ սառել էին, դրա համար էլ կմկմացրել եմ...

Քեռին գոհ, որ սխալ է գտել, մի կողմ էր դնում տետրերն ու անցնում ապուրին:

Երեկոյան քեռի Կիրիլոն մաքուր, սափրված ու պայծառ, նորից գնում էր կայարան իր արկղիկը ձեռքին, և Կլիմկոն ուղեկցում էր նրան մինչև շոգեքարշը: «ФД»-ն կանգնած էր լինում պահեստային գծի վրա, դեռ տաք ոչ վաղուցվա երթից: Խողովակը հազիվհազ ծխում էր, գոլորշին մշշալով դուրս էր եւլնում խողովականցքից և պարուրում հոգնած անիվները: «ФД»-ն հանգստանում էր՝ պսպղացնելով իր յուղոտ սև կողերը և փայլեցրած պղինձը: Նրա կողքին ձմռանն էլ տաք էր:

— Դու այնտեղ տիրություն արա, Կլի՛մ: Գիշերը քնիր առանց վախենալու,— ասում էր քեռին:—Գիշերն էլ ցերեկվա նման է, մենակ են է, որ մութ է:

Ու մինչև Կլիմկոն վազում էր ետ՝ բարաք, քեռին ժպտում էր նրան արդեն շոգեքարշի խցիկից և ձեռքով անում. ահա այսպես, հենց մատներով:

Կլիմկոն բոլորովին էլ չէր վախենում գիշերները, այն պատճառով, որ երբեք բարաքն ամբողջովին քնած չէր լինում: Այնտեղ շատ մարդիկ էին ապրում, բոլորն աշխատում էին կայարանում, աշխատանքի էին գնում ու վերադառնում՝ երբ ասես, դրա համար էլ չէր լինում այնպես, որ բոլորը միաժամանակ քնած լինեին: Բարաքն այնպիսի ուրախ տեղում էր, որ ամեն կողմից նրան լուսավորում էին կրակները՝ կայարանի, վերանորոգման արհեստանոցի ու հանքահորերի, և

ամեն գիշեր լողում էր քաղաքն այդ կրակների մեջ, ասես նավ լիներ՝ արծաթազօծ ծովում:

Այդպես էլ կմեծանար Կլիմկոն այդ ծաղկազարդ գիշերներում, եթե վրա չհասնեին ուրիշ գիշերներ, գիշերներ առանց կրակների: Այդ սև գիշերներին գնացքներն ավելի հաճախ և ավելի արագ էին գնում-գալիս, քան առաջներում. բայց նրանցից այլևս բաց վագոններից եկող սենու տախտակների կամ տաք ցորենի, թաց, հանքահորից հենց նոր հանված քարածխի կամ աղյուսի փոշու հոտ չէր գալիս: Նրանցից դեղերի, զինվորական դաշտային խոհանոցների ծխի, արևից շիկացած ինքնաթիռների ու գնդացիրների բեկորների հոտ էր փչում:

Այդպիսի մի գիշեր կայարան չվերադարձավ քեռի Կիրիլոյի «ФД»-ն, չնայած նրան վաղուց էր սպասում մեքենավարների նոր հերթափոխը:

Լուսադեմին կայարան ժամանեց երկաթուղայինը և բերեց քեռի Կիրիլոյին, նրա օգնականին՝ ծերուկ Կոնդրատովիչին, որ դեռ ցարական շոգեքարշերի վրա էր աշխատել, և հնոցապան Սլավկո-հարմոնահարին: Երկաթուղայինը բոլոր կողմերից շրջապատեցին հերթափոխի շրջուղեպահները, յուղողները, սլաքավարները, և Կլիմկոն ոչ մի կերպ չէր կարողանում ճեղքել-անցնել այդ ամբոխի միջով: Նա տեսավ միայն, որ բոլորը հանեցին գլխարկները և խոնարհեցին գլուխները: Կլիմկոն գոռում ու բռունցքներով խփում էր առջևը կանգնածների մեջքերին.

— Թողե՛ք ինձ:

Նրան ճանաչեցին և մի կողմ քաշվեցին... Կլիմկոն տեսավ միայն քեռու ալեհեր գլուխը բրեզենտի տակից, կապավ մեքենայի թափքին, որ վեր բարձրանա, բայց մեկը բռնեց ուսը.

— Հիմի, որդի՛ ջան, հիմի մոտիկից կտեսնես: Կհանենք ու կտեսնես:

... Կլիմկոն սառած, կեղտոտ ձեռքերով տրորեց աչքերն ու նստեց իր ծղոտե բնում: Ճանապարհի երկու կողմերում ոչ մի շունչ չէր երևում: Միայն հեռվում ինչ-որ տեղ, անմշակ հողերից այն կողմ, որտեղից նա երեկ եկել էր դեպի այս դեզը, լսվում էր սայլերի վաղորդյան հնչեղ դղրդոցը: Այն մեկ խլանում էր, երբ սայլերը ձորն էին իջնում, մեկ էլ նորից էր ուժգնանում, երբ նրանք բլուրն էին բարձրանում: Եվ շուտով, հեռագրասյուների ետևում երևաց գերմանական երկար սայլաշարքը: Գեր, կարճապոչ ծանրաքարշ ձիերի պնչերից տաք գոլորշի էր ելնում: Վերջին սայլի վրա, որ քիչ ետ էր մնացել շարքից, կուզ արած նստել էր մի զինվոր և, երևում էր, ննջում էր. գլխարկն ընկել էր ականջին, ուսերը կախվել էին, դեմքը թաղվել էր վերևում կոճկարձակ, բարձրացրած օձիքով շինելի մեջ: Դեզի մոտ նա գըլուխը բարձրացրեց, ինչ-որ բան ասաց ձիերին, նրանք կանգ առան: Կլիմկոն ավելի խորը թաղվեց իր բնում, իսկ զինվորն անշտապ վայր ցատկեց սայլից, նայեց արևին կարմրափայլ ակնոցներով և շարժվեց դեպի դեզը: Բայց մի քայլ անելով, ետ վերադարձավ ու վերցրեց հրացանը: Նա քայլում էր կամաց-կամաց, սերմնացանի պես: Կլիմկոն լավ էր տեսնում ծղոտի միջից նրա չսափրված, խորշոմած դեմքը, ներքևի հաստ, կախ ընկած շրթունքն ու վեր տնկած ուսին գցած հրացանը: Նա՝ այդ զինվորը, արդեն տարիքն առած մարդ էր և, երևի, գընում էր դեզից ծղոտ վերցնելու, իր տակ փռելու համար: Կլիմկոն դա հասկացավ, երբ այդ քեռին հրացանը դեմ տվեց դեզին ու փորձեց ծղոտ դուրս քաշել ինչ-որ բան մրթմրթալով: Հետո նա տեսավ հանված ծղոտի կույտը՝ Կլիմկոյի բույնը, և գնաց դեպի այն կողմը: Կլիմկոյի սիրտը նվաղեց. չգիտեր ի՞նչ անի՝ վե՞ր թռչի, գոռա՞.



*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ*

շարժվի՞... Եվ երբ զինվորը ետ տարավ իր ծանր սև կոշիկով ոտքը, որպեսզի բացով վայր գցի Կլիմկոյի թաքստոցի շաղոտ կատարը, նա արդեն ոչինչ չմտածելով ու չտեսնելով իր դեմ, բացի զինվորի կրնկի փայլուն պայտից, վեր թռավ տեղից ծնկաչոք, կեղտոտ, չխուզված, մազախռիվ:

Զինվորը մի պահ քար կտրեց ոտքը բարձրացրած, հետո բարակ ձայնով ճղաց ու մի կողմ թռավ: Նա չանթեց հրացանը և ուղղեց Կլիմկոյին՝ իրենից հեռու պահած: Կլիմկոն համրացած նայում էր հրացանի փողի սև խորշին,—այն երերում էր իր քթարմատին նշան բռնած,—հետո բացեց բռունցքները և ցույց տվեց զինվորին իր նիհար, կապույտ ափերը:

— Մի՛ վախեցեք, քեռի՛,—ասաց, ցրտից կակազելով:—Տեսե՛ք, ձեռքիս ոչ մի բան չկա:

Մարդը եզան պես փփսացրեց քթով ու բարձրաձայն հոգոց հանեց, սակայն հրացանը ձեռքից չգցեց:

— Չկա, ասում եմ,—Կլիմկոն էլի մի անգամ ցույց տվեց իր ափերը և նույնիսկ մատները չռեց:

— Օ՜, ո՜ւ,— ասաց զինվորը, ակնոցների տակից բարձրացնելով նոսր, ողորմելի հոնքերը և ծիծաղեց: Սկզբում մանրիկ, կնկա նման, հետո հռռաց, այնպես բարձր, որ կապույտ ճեղագռավները ճամփեզրի սյուներից թռան հեռու, իսկ Կլիմկոն ծնկաչոք նայում էր ծխախոտից դեղնած պայտաձև ատամնաշարով նրա բաց բերանին և նույնպես փորձեց ծիծաղել, բայց զկռտոց դուրս եկավ:

Վերջիվերջո հանգստանալով, զինվորը մատներով սրբեց աչքերը ակնոցների տակից և հարցրեց.

— Դու ո՞վ, տղա:

Կլիմկոն լուռ էր, զարմացած զինվորի ոչ-գերմանական առոգանության վրա:

Այն ժամանակ զինվորը հրացանը դրեց ծնկների արանքը և ազատված ձեռքի մատները ծալելով սկսեց թվել.

— Իվան, Ալեքսանդեր, Պետեր...

— Չէ,—ասաց Կլիմկոն:—Իմ անունը Կլիմ է:

— Օ-ում, Կլիմ Վորոշիլոֆ,—քըրքըջաց զինվորը:—Կլիմ: Ռոզումեմ՞...* Այստեղ կա քո տո՞ւն:

— Չէ,—գլուխն օրորեց Կլիմկոն:— Ես այստեղ միայն գիշերել եմ: Ես ոչ մի տեղ տուն չունեմ:

— Ռոզումեմ,—ասաց զինվորը, և

---

* *Հասկացա (չեխ.)*

արագ-արագ ինչ-որ բան բլբլաց: Նա խոսում էր երկար՝ մատով, ինչպես ատրճանակով Կլիմկոյին բշտելով. «Պուֆ, պուֆ», և մի քանի անգամ կրկնեց պարտիզան բառը: Միայն այդ ժամանակ Կլիմկոն գլխի ընկավ, որ այդ չեխ զինվորը, երևի, վախենում էր պարտիզաններից և քիչ էր մնացել անգիտակցաբար կրակեր Կլիմկոյի վրա:

— Ես աղի եմ գնում ա՜յ այնտեղ,—Կլիմկոն ցույց տվեց սպիտակ բլուրները:—Ինձ աղ է հարկավոր,—և մատներով ափի մեջ ցանել ցույց տըվեց:—Ա՞ղ:

— Ա-ա, աղ: Ռոզումեմ... Աղ ու հաց:

Նա նայեց Կլիմկոյի ճաքճքված, կեղտոտ և ճակնդեղի նման կարմրատակած ոտքերին, պատվիրեց սպասել և գնաց դեպի սայլը:

Չեխը վերադարձավ արդեն առանց հրացանի, ձեռքին գունաթափ, ժանգագույն և կանաչ բծերով վրան-թիկնոցի փաթեթ և տվեց Կլիմկոյին:

Դրանից հետո հավաքեց մի խուրձ ծղոտ, մի անգամ էլ նայեց Կլիմկոյին, գլուխն օրորեց.

— Կոիվ, վատ է... Վատ կոիվ...— և գնաց դեպի ձիերը, կորաքամակ ծերունական ոտքին հարմար չեկող կիսակոշիկներով:

Սայլը շարժվեց ճանապարհով հեռացող շարքի ետևից և շուտով գլորվեց հովիտ:

Կլիմկոն քանդեց փաթեթը: Այնտեղ կար մի տուփ չոր, կանաչավուն գալեթ և մի կլոր, սև տուփ աղ՝ գուցե թե մի պտղունցի չափ: Կլիմկոն պատռեց թուղթը, հանեց մի գալեթ, կծեց ու սկսեց արագ ծամել: Բերանում տտիպ համ և սառնություն զգաց: Սիրտը քամ ընկավ: Կլիմկոն հոտ քաշեց գալեթից և հանկարծ դադարեց ծամել. նրանից դաղձի և խնկի հոտ էր գալիս, ինչպես քեռի Կիրիլոյի սնարի չոր ծաղիկներից:

Կլիմկոն արագ վեր կացավ, վրանթիկնոցն ու աղը թևատակին, ճամփա ընկավ, ծակծկելով ոտքերը սառը, շողոտ խոզանով:

*(Շարունակելի)*

## ՕԼԻՄՊԻԱԴԱ-80



16-րդ օլիմպիական խաղերի մասնակից Ռ. Ջնելաձեի համար մրցամարտային ճակատագիրը յուրատեսակ փորձություն էր պատրաստել: Եթե Ջնելաձեն հունգարացի Պոլյակին տանով տար «մաքուր», այսինքն հայտնըվեր մեջքի վրա գորգին գամված, սովետական ըմբշամարտիկը կստանար արծաթե մեդալ, իսկ եթե նա հաղթանակը զիջեր լոկ միավորներով, պարգևը մեկ աստիճան ցածր կլիներ, ընդամենը... բրոնզ:

Ջնելաձեն, ինչ խոսք, հաղթանակ էր տենչում, երազում էր ոսկե մեդալ, բայց երբ պարզ դարձավ, որ նա, մեկ է, չի կարողանա հաղթել, չգնաց խղճի դեմ, թույլ չտվեց, որ հակառակորդն իր նկատմամբ տանի մաքուր հաղթանակ, գետնով տա իր թիկունքը, մի բան, որը նրան կապահովեր արծաթե մեդալ: Նա պայքարեց մինչև գոնգի վերջին հարվածը: Եվ զարմանալի չէ, որ ամենից խանդավառ ծափահարությունները հասան բրոնզե դափնեկրին:



Օլիմպիական Հռոմ... Գոտեմարտ ըմբշամարտի գորգի վրա: Պայքարի երրորդ րոպեի ավարտի մոտ սովետական մարզիկ Օլեգ Կարավաևը հանկարծ ընդհատում է մենամարտն ու ինչ-որ բան է բացատրում մրցավարին: Ինչպես պարզվեց՝ մրցավարը չէր նըկատել, որ Կարավաևը սխալ է թույլ տվել, և մարզիկն ինքը հարկ էր համարել խոստովանել այդ: Գոտեմարտը շարունակվեց, Օլեգը մրցակցին գետնեց մեջքի վրա, մաքուր հաղթանակ: Հաղթանակ՝ միայն ազնիվ պայքարում:





*«Մեղավոր ենք ոչ միայն մենք»*

# ԼԱՎ Է, ԵՐԲ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐՆ ԵՆ ՈՒՂԵԿՑՈՒՄ

Մեր դպրոցում ուսուցիչների ղեկավարությամբ հաճախ կազմակերպվում են էքսկուրսիաներ: Վերջերս մեզ տարան անտառ, այնտեղից էլ բարձրացանք քաղաքի դիմացի սարը, որը կոչվում է «Արջասար»: Մեր էքսկուրսիան անցավ շատ հետաքրքիր: Այնտեղ մենք երգեցինք, պարեցինք, նաև լսեցինք դիրեկտոր ընկ. Վ. Ամիրխանյանի զրույցը լեռներում եղած հանքային հարստությունների մասին: Ուրախ վերադարձանք տուն: Ահա թե ինչու մենք ոչ մի անգամ չենք մտածել դասերի հաշվին էքսկուրսիա գնալ:

*ԱՆՆԱ ՋԱՂԻՆՅԱՆ*
*Ստեփանավան, № 4 դպր., 5-րդ դասարան*

*«Կանգ առ և լսիր...»*

# ՀԱՍԿԱՆԱՆՔ ՈՒ ՍԻՐԵՆՔ ԳԵՂԵՑԻԿԸ

Փոքրիկ աղջկա բնավորության մեջ ամենաասարսափելին նրա անհոգի վերաբերմունքն է դեպի բնությունը: Բնության ճանապարհին անգիտակցաբար այս փոքրիկի նման շատ-շատերն են կանգնում, անխնա ոչնչացնելով մեր բնության գեղեցկությունները: Իմ կարծիքով, եթե այդպիսիներին ժամանակին չուղղեն, նրանք հասակ առնելուց հետո էլ չեն կարողանա ինչպես պետքն է զգալ ու գնահատել գեղեցիկը, բնության և մարդկանց ստեղծածը:

Չեմ կասկածում, որ այդ փոքրիկը անխնա է վարվում նաև իր խաղալիքների, գրքերի, դպրոցական պիտույքների հետ:

Անցյալ ամռանը ծնողներիս հետ Երևան էինք գնում: Ջրաշենի ծաղկաշատ սարերից դեպի մեքենան վազեցին մի քանի երեխաներ՝ ծաղկեփնջերը ձեռքներին: Վաճառում էին:

Իսկ եթե չէր վաճառվում, շպրտում էին:

Մայրս վշտացած պատմում էր, որ անխնա քաղելու պատճառով ծաղիկները չեն հասցնում սերմեր տալ ու գնալով սարերի ու դաշտերի ծաղիկը պակասում է:

*ԱՆԱՀԻՏ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ*
*Սպիտակ, № 2 դպր., 7-րդ դաս.*

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 26. ԻՆՉ ՊԵՏՔ Է ԻՄԱՆԱԼ ԱՄԵՆԻՑ ԱՌԱՋ

Ամենից առաջ այն, որ բառն ունենալով մեկ կամ մի քանի իմաստ, հազարումի այլ իմաստներ է հայտնաբերում ուրիշ բառերի հետ շարահյուսվելիս:

Ամեն մի դպրոցական գիտե, որ քերականությունը բաղկացած է երկու մեծ բաժիններից՝ ձևաբանություն (*морфология*) և շարահյուսություն (*синтаксис*): Գիտե նաև, որ ամեն մի բառ պատկանում է և՛ մեկին, և՛ մյուսին. ասենք, գ ի ր ք բառը, որ գոյական է, շարահյուսվելիս, նախադասության մեջ կարող է լինել ենթակա (այս գիրքը հետաքրքիր է), ուղիղ խնդիր (ես կարդում եմ մի հետաքրքիր գիրք) և այլն:

Երբ լսում ենք հ ո ղ բառը, մենք դրա ը ն դ հ ա ն ո ւ ր պատկերացումն ենք կազմում ըստ իր բառային իմաստների: Մինչդեռ նախադասության մեջ բառը ձեռք է բերում իր կոնկրետ առարկայական իմաստը և հնարավորություն է տալիս հասկանալու, թե հատկապես ի՛նչ հողի մասին է խոսքը: Մի բան է, երբ ասվում է՝ ն ա ձ ե ռ ք ի մ ե ջ տ ր ո ր ե ց հ ո ղ ը (այստեղ դա նշանակում է երկրի երեսը ծածկող փուխր գորշավուն նյութ), այլ բան է, երբ ասվում է՝ ջ ր ո վ ի ղ ա ր ձ ն ե լ հ ո ղ ե ր ը (այսինքն՝ հողային տարածությունները), բառը մի երրորդ իմաստ է ստանում, երբ ասում ենք՝ ն ա կ ա պ վ ա ծ է հ ա յ ր ե ն ի հ ո ղ ի հ ե տ (այսինքն հայրենիքի հետ):

Դա է պատճառը, որ երբ հարցնում են, թե ի՞ն չ է ն շ ա ն ա կ ո ւ մ ա յ ս կ ա մ ա յ ն բ ա ռ ը, հ ա ր ց ի ն իրավացիորեն պատասխանում են հարցով՝ ո՞ ր ն ա խ ա դ ա ս ո ւ թ յ ա ն մեջ: Այդպես է, քանի որ մի նախադասության մեջ բառը մի իմաստ կարող է արտահայտել, մեկ ուրիշում՝ բոլորովին այլ: Ինչի՞ շնորհիվ: Այն դիրքի շնորհիվ, որ նա գրավում է ուրիշ բառերի համադրության մեջ, որոշ դեպքերում ի հայտ բերելով իր ուղղակի բառային իմաստները, ինչպես տեսանք հ ո ղ բառի կիրառության օրինակներով, որոշ դեպքերում էլ՝ ուրիշ իմաստներ, որ կտեսնենք լ ո ւ յ ս բառի կիրառության օրինակներով:

Այդ բառի առաջին և գլխավոր իմաստն ըստ բացատրական բառարանի հետևյալն է. «ճառագայթային ուժ, որ ընկալվում է տեսողությամբ և շրջապատը դարձնում տեսանելի»: Բայց նույն այդ բառարանը լ ո ւ յ ս բառի բազմաթիվ ուրիշ իմաստները ցույց է տալիս ուրիշ բառերի հետ ունեցած համադրությունների՝ նախադասությունների ու դարձվածքների միջոցով: Ասենք թե՝ գ ի ր ք ը լ ո ւ յ ս տ ե ս ա վ, որ կնշանակի գիրքը հրատարակվեց, լ ո ւ յ ս ս փ ռ ե լ, որ կնշանակի բացատրել, պարզաբանել, լ ո ւ յ ս ա շ խ ա ր հ գ ա լ, որ կնշանակի ծնվել, հայտնվել և այլն, և այլն:

Այդպես էլ շատ և շատ ուրիշ բառեր՝ բառարանում ունեն մի քանի կամ

մի քանի տասնյակ իմաստ, իսկ շաղկապվելիս, ուրիշ բառերի հետ համադրվելիս ձեռք են բերում նաև այլ իմաստներ։ Այդպես ամեն մի նոր համադրության մեջ բառն անսպասելիորեն մեծացնում է իրավունքները, բացվում է, փոխում է թևերը, ստանում նոր բովանդակություն, նոր գույներ, որոնք իրենց հերթին փոխվում են ըստ իրենց գրաված նոր դիրքի մի այլ համադրության մեջ այնպես, ինչպես նախշերն ու գույներն են փոխվում գեղադիտակի մեջ։ Ահա ինչու լեզվաբան Լև Ուսպենսկին կարող էր գրել զարմանքով. «Եթե մարդկային լեզուներում ապրում են հարյուր հազարավոր, գուցե և միլիոնավոր բառեր, ապա դրանց հնարավոր համադրությունների քանակն անհնար է արտահայտել երևակայությանը մատչելի որևէ մեծությամբ»։

Իրո՛ք որ զարմանալի է։ Բայց մի՞թե նույնը չէ շախմատը. երեսուներկու ֆիգուր, խաղատախտակի վաթսունչորս վանդակ և համադրությունների այնպիսի անթիվ-անհամար հնարավորություններ, որ երբեք մի խաղը մյուսի կրկնությունը չի լինում, ինչքան էլ մեծ լինի խաղերի թիվը։ Ինչի՞ շնորհիվ. ընդամենը երեսուներկու ֆիգուրի տարբեր դիրքերի, որ նրանք գրավում են վաթսունչորս վանդակի վրա։

Հենց այդ միջոցով էլ բառերի որքան էլ շատ, բայց և այնպես ս ա հ մ ա ն ա փ ա կ քանակով ստեղծվում են ա ն ս ա հ մ ա ն ա փ ա կ քանակով նախադասություններ ու դարձվածքներ, նորանոր համադրություններ։

Նույնը չէ՞ երաժշտության մեջ՝ հնչյունների սահմանափակ քանակ, յոթ նոտա (տասներկու հնչյուն) ընդամենը, և խնդրեմ՝ մեղեդիների ծով հարստություն, որ ստեղծվել են մինչև օրս, ստեղծվում են ու կստեղծվեն՝ առանց կրկնելու միմյանց։ Ինչի՞ շնորհիվ։ Վերստին՝ տարբեր դասավորության, տարբեր ռիթմերի, լադերի, հնչյունները տարբեր դիրքերում դնելու, տարբեր կոմպոզիցիաներ ստեղծելու։ Ահա ինչու երգահանին, մեղեդիներ, երաժշտություն հորինողին կոմպոզիտոր են կոչում (այդ բառը լատիներեն նշանակում է կազմող, համադրող)։

Շարունակենք այս համեմատությունը. եթե բոլորը չեն, որ մեղեդիներ են հորինում, այդ մասնագիտությամբ զբաղվում են քչերը, ապա բոլոր մարդիկ շարունակ խոսքի համադրություններ են ստեղծում, գրավոր լինի թե բանավոր։ Ահա թե ինչու, եթե մենք պարտավոր չենք երաժշտություն հորինելու օրենքներն իմանալ, ապա խոսքի հորինման գոնե ամենագլխավոր օրենքներն իմանալ պարտավոր ենք։ Իմանալ ոչ թե գրական գործեր ստեղծելու համար (իմացությունը քիչ է, այդ գործում տաղանդ է պետք), այլ առօրյա կյանքում կարգին խոսելու և գրելու, ավելացնենք՝ նաև գրական երկի լավ ընթերցող լինելու համար։

Խոսքը պատկերավոր ու արտահայտիչ դարձնելու միջոցների մի ամբողջ շարք կրում է ա յ լ ա բ ե ր ու թ յ ու ն անունը։ Դա հունարեն tropos (դարձ) բառի թարգմանությունն է։ Թե ինչ բան է այլաբերությունը կամ տրոպը՝ կպատմենք հաջորդ անգամ։ Չընկրծեք, թե դա մի չտեսնված-չլսված բան է. մեր առօրյա խոսքի մեջ մենք շարունակ գործի ենք դնում այլաբերություններ, միայն թե շատերը չգիտեն, որ դրանք այդպես են կոչվում։

Հասարակ մի օրինակ՝ «անձրևը վրա է տալիս» խոսքը ոչ այլ ինչ է, բան այլաբերություն, քանի որ ուղղակի իմաստով՝ անձրևը հո զորք չի՞, որ վրա տա, անձրևը կարող է թափվել։ Բայց ինչո՞ւ ենք այդպես ասում, ի՞նչն է պատճառը։

# ՀՐԵՇԸ

*ՔԵՆԻԿ ՍԵՅՐԱՆՅԱՆ*

**1943** թվականի ծանր ու դժվարին հուլիսին էր: Զինամթերքների մեր բազան էվակուացվել էր արևելք: Նոր էինք ընտելացել տեղանքին, ձեռնարկել արկերի, ականների, ռումբերի ընդունման ու առաքման գործը, երբ մի առավոտ մեր պետի մոտ եկավ հարևվան գյուղացի մի ծերուկ, խնդրեց օգնել իրենց՝ ազատվելու գետային հրեշից:

— Գյուղում էլ սագ ու բադ չթողեց, խժռեց, կերավ անիրավը: Գետը մըտածի տերը չենք,—ասաց խեղճ-խեղճ:—Բանն այնտեղ է հասել, որ այս շոգ կրակին երեխաները վախենում են լողալ գետում, իսկ կանայք լվացք անելու համար՝ մոտենալ գետափին: Նրա հախից միայն դուք կարող եք գալ, հարգելի՛ս, ձեր պիրոտեխնիկները, ուրիշ ոչ ոք,— խոր հոգոց հանեց ու վիզը ծռած կանգնեց:

Մեր պետը լուրջ չընդունեց ծերունու ասածը և քաղաքավարությամբ մերժեց, ասելով, որ ո՛չ ժամանակ, ո՛չ իրավունք ունի «հրեշորսությամբ» զբաղվելու:

Ծերուկը քոռ-փոշման գնաց:

Բայց ահա օրեր անց միևնույն խնդրանքով մեզ մոտ եկավ մի ամբողջ պատվիրակություն՝ գյուղխորհրդի նախագահի գլխավորությամբ: Երևում էր՝ «հրեշը» շատ էր նեղում կոլտնտեսականներին:

Այս անգամ պետը կանչեց ինձ ու պատվիրեց.

— Գիտե՞ս ինչ, լեյտենա՛նտ Գասպարյան, ստիպված պիտի լինենք կարգը խախտել: Գնա՛ և պարզի՛ր, թե այդ ինչ «հրեշ» է: Բոլոր միջոցները ձեռք առ՝ զգուշություն պահպանելու համար: Պա՞րզ է:



— Պա՛րզ է, ընկե՛ր պետ,— պատասխանեցի:

— Երկու զինվորը բավակա՞ն է:

— Այո՛, ընկե՛ր պետ:

— Դե, ուրեմն, գործի՛ր:

Պատվիրակության մեջ էր մեզ արդեն ծանոթ ծերուկը, որը, ինչպես հետո պարզվեց, ճշգրիտ գիտեր «հրեշի»

գիշերելու տեղը։ Նրա հետ պայմանավորվեցինք երբ և որտեղ հանդիպել։ Ծերունին խոստացավ մակույկ նախապատրաստել ու վաղ առավոտյան ընպասել գետափին։

— Ծեգը նոր ծագած, հարգելի՛ս,— ասաց նա։

Այդպես էլ անում եմ։ Ձեռքի ընռնակների մի կապոց վերցրած, երկու զինվորների հետ, ուղևորվում եմ պայմանավորված տեղը։ Նեղ, ոլորուն շավիղը անտառի միջով մեզ տանում է դեպի հեղեղատը, որի մոտ ծերունին պիտի մեզ սպասելիս լիներ։

Շուտով հասնում ենք գետափ։ Ջրերը հոսում են խաղաղ, հանդարտիկ։ Նրանց վրա սպիտակ քողի նման կախվել է վաղորդյան մշուշը։ Հանդիպակաց բլրի ուսին ուրվագծվում են

— Պետք է շտապել, հարգելի՛ս, քանի դեռ հրեշը դուրս չի եկել որսի,— ասում է ծերունին ու մեզ առաջնորդում դեպի «հրեշի» հանգրվանը։

Տեղ հասնելով, մյուսներին կարգադրում եմ հեռանալ գետափից, թաքնըվել հարմար տեղ, ինքս վառում եմ ընռնակների կապոցի պատրույգը, նետում ջրափոսը։

Տաս-տասնհինգ վայրկյանը բավական է, որպեսզի ես նույնպես թաքնըվեմ։

Մուգ, սևին տվող ջրափոսի երեսին ծխի մի բարակ, կապույտ երիզ է ոլորվում։

Էլի մի քանի վայրկյան, և լսելի է դառնում ահռելի պայթյունը։

Ջրերը զորեղ շատրվանի պես պոկվում են տեղից, ծառս լինում դեպի երկինք ու շաղ գալիս շրջակայքի վրա։



*Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*

գյուղի խրճիթները՝ ճերմակ պատերով ու կարմիր տանիքներով։ Ի՜նչ սքանչելի տեսարան։

Ցածում՝ գետափին, մեզ է սպասում ծերունին։ Հանդիպում ենք նրան ու շարժվում դեպի հեղեղատը, որից ցած՝ գետը, պտույտ տալով, գոյացնում է մի բավական ընդարձակ ջրափոս։

Ջրափոսի խորքից խլդրլդալով վեր են բարձրանում շշմած-շլմորած ձկներ, շուռ գալիս մեջքի, ջրի երեսը համարյա սպիտակում է։

Շուտով երևում է նաև նա՝ «հրեշը», իր ահագին սպիտակ փորը դեպի վեր պարզած. իսկ և իսկ շրջված նավակ։

Իմ զինվորներն իսկույն գործի են անցնում: Ծերունկի օգնությամբ մակույկը գետը սահեցնելով, նրանք շտապում են դեպի «հրեշը»:

Երեք հոգով հազիվ են կարողանում «հրեշին», որ մի հսկայական թանափ էր, բարձրացնել գցել մակույկը: Երկու և կես մետրանոց հսկայի ծանրությունից քիչ է մնում մակույկը սուզվի: Ջուկն անշարժ է, երևի սպանված:

Բայց ահա, դեռ ափ չհասած, նա կարծես ուշքի է գալիս, պոչի մի ուժգին հարվածով տաշեղի թեթևությամբ ջուրը նետում ծերունկին: Բարեբախտաբար ծերուկը լավ լողալ գիտեր: Ջրի երեսն ելնելով, լողում է դեպի նավակն ու հետն էլ գոռում.

— Ծոպա՜նը, ճոպա՜նը...

Մեր զինվորները, որ ջլապինդ երիտասարդներ էին, սկսում են հաստ ճոպանով կաշկանդել գազանին: Օգնության եմ հասնում նաև ես, ու հիմա չորս հոգով ենք մենամարտում թանափի դեմ: Գազանն էլի ճիգ ու ջանք է գործ դնում՝ ազատվելու մեր ձեռքից, բայց զուր. նրա երգն արդեն երգված է:

Պայթյունի ձայնի վրա կանայք ու երեխաներ են դուրս թափվում տներից, շտապում գետափ: Ուրախ, հրճվագին բացականչություններով նրանք դիմացի ափից նայում են ցամաք հանված «հրեշին»:

Ուրախ էին, որ արդեն ազատվել են գիշատիչ գազանից, որն այնքան վնաս էր պատճառել իրենց, ահ ու սարսափի մեջ պահել երեխաներին ու կանանց:

Այդ պահից գյուղի երեխաներն ազատ-համարձակ կարող էին նորից լողալ գետի զուլալ ջրերում, իսկ կանայք գետափին իրենց լվացքն անել:



Վերջերս Երևանում, արտասահմանի հետ մշակութային կապերի կոմիտեի ցուցասրահում բացվեց մանկական ստեղծագործությունների ցուցահանդես, որը կրում էր «Հրո երկիր» խորագիրը: Նրա կազմակերպիչն էր Չեխոսլովակիայի գեղարվեստական դպրոցների գլխավոր մեթոդիստ և հայ արվեստի ու մշակույթի կրքոտ պրոպագանդիստ Իրժի Նոսեկը:

Ցուցահանդեսում ներկայացված էին «Հայաստանը չեխոսլովակ և գերմանացի երեխաների աչքերով» մըր-

# Հայաստանը՝ չեխոսլովակ և գերմանացի երեխաների աչքերով

ԻՐԺԻ
ՆՈՍԵԿ



ցույթում առավել աչքի ընկած ստեղծագործությունները:

Մարցելա Զելենկովան իր նկարը ստեղծել է «Գայանե» բալետը դիտելուց հետո: Տպագրվող մյուս նկարներում երեխաները փորձել են վերարտադրել հայկական ժողովրդական հեքիաթներից ստացած իրենց տպավորությունները:

Մինչև Երևան գալը ցուցահանդեսի աշխատանքները ներկայացվել են Պրագայում և Լայպցիգում:

1. 

2. 

1. ՄԱՐՑԵԼԱ ԶԵԼԵՆԿՈՎԱ, 7 տարեկան Պրագա
2. ՈՒՏԱ ՈՒՐԲԵԳԵՐ, 8 տ., Լայպցիգ
3. ՎԵՐՆԵՐ ԲԱՐՁ, 15 տ., Բեռլին
4. ԲԱՐԲԱՐԱ ՄԱՐ, 15 տ., Բեռլին

Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

3. 

4. 

# ՄԱՅՐԻԿՍ ԿՈՂՊԵՔ

ԳԵՎՈՐԳ ԶԱՐԵՆՑ



Մենք շուն չէինք պահում: Մեր ինչի՞ն էր պետք: Շունը պահում են, որ տունը պահպանի:

Իսկ մենք ի՞նչ տուն ունեինք, որ...

Պատերազմի տարիներին օրվա հացը հոգալու համար վաճառել էինք այն ամենը, ինչ շուկայում կարող էր գին ունենալ: Այսօրվա պես հիշում եմ, թե մայրս ինչպես էր պատերից պոկում «դեղնանկյուն» գորգերը, ինչպես էր հանում մահճակալների ցանցերին գցված նախշավոր կարպետները ու տանում շուկա՝ գարու, եգիպտացորենի հետ փոխանակելու: Հետո հերթը հասավ արծաթե գդալներին, պատառաքաղներին ու գեղեցիկ ափսեներին, բարձերի ու վերմակների մետաքսե երեսներին: Երբ ամեն արժեքավորը շուկա հանվեց ու վաճառվեց, ես մի օր զգացի, որ մեր տունը բաղկացած է չորս մերկ պատերից, ժանգի բերան ընկած երեք մահճակալներից,

# ԳՆԵՑ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



ինձանից, եղբորիցս և մեր բարի մայրիկից:

Դե, հիմա ասացե՛ք, շունը այսպիսի տան ինչի՞ն էր պետք:

Բայց եկավ մի օր, որ մենք էլ շնատեր դարձանք:

Դա պատերազմի ավարտից երկու տարի հետո էր:

Մայրիկը աշխատանքից տուն էր եկել: Նրա տրամադրությունը շատ բարձր էր: Ես և եղբայրս վառարանի վրա շերտ-շերտ կարտոֆիլ էինք խորովում: Մայրիկս ուրախ-ուրախ մոտեցավ մեզ ու պայուսակից մի թղթադրամ հանելով՝ մեկնեց ինձ.

— Սա ձեզ,— ասաց նա,— կոնֆետ կառնեք: Այսօր լավ աշխատանքի համար ինձ պարգևատրել են:

Ես ու եղբայրս՝ Վահրամիկը, տնից իսկույն դուրս թռանք: Խանութը հարյուր քայլի վրա էր: Նրա լայն պատուհանից ինչքա՜ն էինք նայել արկղների մեջ լցված, գույնզգույն թղթերով փաթաթված կոնֆետներին:

— Էժանից առնենք, որ շատ լինի, հա՞,— ասացի եղբորս:

— Հա՛,— համաձայնեց նա:

Էժանը շոկոլադի գույնի մերկ կոնֆետն էր, որ շատ էր նման քարձիկի:

Մեր գրպանները լցվեցին «քարձիկներով», և մենք ուրախ-ուրախ դուրս եկանք խանութից ու շտապեցինք մեր տան դիմացի սռճիների պուրակը, որ ուտելիս մեզ մարդ չտեսնի: Ես և Վահրամիկը դեռ երկու «քարձիկ» էլ չէինք կերել, երբ լսեցինք սրտաճմլիկ մի ձայն: Նայեցինք մեր շուրջը:

Նույն ձայնը, միայն թե այս անգամ ավելի նվաղուն, լսվեց մեր գլխավերևից: Նայեցինք վեր ու մի պահ քարացանք: Սոճու ճյուղից փոքրիկ մի շնիկ էր կախված: Վահրամիկը իսկույն մագլցեց ծառը և դանակով կտրեց պարանը: Շնիկը թռմփաց գետնին ու իր մշուշված, չալ աչքերով նայեց ինձ: Մինչ եղբայրս կիջներ ծառից, ես շնիկի վզից արձակեցի պարանը: Նա ազատ շունչ քաշեց ու փորձ էլ չարեց փախչելու: Գլուխը դրեց առջևի երկու թաթիկների վրա և, առանց աչիկները թարթելու, սկսեց ուսումնասիրել մեզ:

Վահրամիկը մի կոնֆետ մեկնեց նրան: Նա հազիվ երկու քայլ արեց դեպի մեզ և, առանց ատամները

ցույց տալու, լեզվի ծայրով եղբորս ձեռքի ափից վերցրեց կոնֆետը:

— Ի՞նչ խելոք շնիկ է,— ասաց Վահրամիկը,—արի տո՛ւն տանենք:

Ես ձայն չհանեցի: Շունն էր հենց պակաս, մայրիկը հազիվ էր մեզ պահում: Իմ լռությունը եղբայրս համաձայնություն նշան համարեց ու շընիկին գիրկն առնելով, առաջ ընկավ: Ես հետևեցի նրան: «Տեսնես ի՞նչ կասի մայրիկը»,—մտածում էի ճանապարհին: Հազիվ էինք մի քանի քայլ հեռացել, երբ մեր ետևից մի չար ծիծաղ պայթեց: Ետ նայեցինք: Մեկը ծիծաղելով փախչում էր դեպի պուրակի խորքը: Նրան թիկունքից ու քայլվածքից ճանաչեցինք: Խուժան Վաղոն էր: Երևի հենց նա էր շնիկին կախել ծառից:

Մե՞ր, թե՞ շնիկի բախտից մայրիկը տանը չէր: Մեր տան նկուղային հարկի մի անկյունում Վահրամիկը մաշված կարպետի մի կտոր փռեց ու շնիկին նստեցրեց վրան: Ես ուշադիր նայեցի շնիկին: Ինչքա՜ն էր նիհար ու տանջահար: Փորը կպել էր մեջքին: Երբ փորձում էր վեր կենալ, տոտիկները ծալվում էին ու նորից նստում էր իր տեղը: Միակ լավը, որ ուներ, նախշուն, խելոք աչքերն էին:

— Չի ապրի,—ասացի ես:

— Կապրի: Շատ է քաղցած: Երևի օրերով քան չի կերել,— ասաց Վահրամիկը ու վազեց երկրորդ հարկ: Քի՛չ



անց նա իր ալյումինե ամանով ճաշի մնացորդ բերեց շնիկի համար: Շնիկը իսկույն աշխուժացավ ու սկսեց ագահաբար ուտել: Երբ ամանը դատարկվեց, նա նախշուն աչքերով ժպտաց մեզ: Այդ ժպիտով երևի իր շնորհակալությունն էր հայտնում:

Շնիկի գոյության մասին մայրիկը իմացավ միայն հաջորդ օրվա առավոտյան: Նա իջել էր նկուղ՝ այնտեղից կարտոֆիլ ու թթու բերելու: Դուռը բացելուն պես՝ շնիկը վեր էր թըռել ու հարձակվել մայրիկի վրա: Շընիկի հաչոցից մենք արթնացանք: Սակայն հենց որ լսեցինք մայրիկի ոտնաձայնը, վերմակը քաշեցինք գլխներիս՝ ձևացնելով, թե դեռ քնած ենք:

— Ձեզանից ո՞վ է բերել այդ գամփռը,— հնչեց մայրիկի ծաղրական խոսքը: Մենք ձայն չհանեցինք: Իսկ մայրիկը շարունակեց.

— Որ բերել եք, գոնե լողացնեիք: Ամբողջովին կեղտի մեջ կորած է:

«Ուրեմն մայրիկը համաձայն է»,— անցավ մեր մտքով, ու մենք միասին վերմակը մի կողմ նետելով, վեր ցատկեցինք անկողնուց, կախվեցինք մայրիկի վզից ու սկսեցինք համբուրել նրան:

— Լա՛վ, լա՛վ, սատանություն մի՛ արեք,— զգացված ասաց մայրիկը և ազատվելով մեզնից, մտավ խոհանոց: Նա մեծ կաթսայով ջուր դրեց կրակին ու դուրս եկավ տնից:

— Այդ «գամփռին» կլողացնեք: Իսկ թե ինչով եք կերակրելու, չգիտեմ,— դեռ աստիճաններին չհասած, ասաց նա ու գնաց աշխատանքի:

— Ես չգիտեի, որ այդքան բարի է մայրիկը,— ուրախությունից ծափ զարկեց Վահրամիկը:

Շնիկին երկուսով լողացրինք, սանրեցինք մազերը, նա գեղեցիկ աչիկներ ունենալուց բացի, գեղեցիկ էլ մազեր ուներ:

Ամիսներ անցան, և մեր շնիկը խակական շուն դարձավ: Մայրիկի ասած՝ գամփռ:

Ամեն առավոտ, երբ մայրիկն աշխատանքի էր գնում, Չալիկը նրան ուղեկցում էր մինչև ավտոբուսի կանգառը և սպասում այնքան ժամանակ, մինչև որ նա ավտոբուս բարձրանա:

Աշխատանքային օրվա վերջին էլ, երբ մենք տանն էինք լինում, Չալիկը վազում էր կանգառ, սպասում մայրիկի վերադարձին: Հենց մայրիկը ավտոբուսից ոտքը գետնին էր դնում, նա ծանու էր լինում ետևի ոտքերի վրա, առջևի թաթերը գլխի հետ միասին թաղում մայրիկի շորերի մեջ, ապա ետ վազում տուն՝ մեզ հայտնելու մայրիկի գալուստը: Իսկ երբ տանը ոչ ոք չէր լինում, Չալիկը մայրիկին ո՛չ ուղեկցում էր և ո՛չ էլ դիմավորում: Նա շատ լավ գիտեր, որ մենք տան դուռը փակելու սովորություն չունենք: Էլ ինչպե՞ս կարելի էր դուռը բաց թողնել ու հեռանալ:

Տարիները իրար հրելով անցնում էին: Ապրելը թեթևանում էր: Յուրաքանչյուր ամսվա սկզբին կամ վերջին մեր տանը մի նոր բան էր ավելանում: Ալյումինե ամանները փոխարինվում էին հախճապակե գեղեցիկ ափսեներով, վերմակներն ու բարձերը նոր երեսներ էին հագնում: Ժանգոտած մահճակալներն իրենց տեղն էին զիջում նիկելապատ մահճակալներին, ծածկվում էին մեր տան մերկ պատերը: Մայրիկս այլև չէր անհանգստանում, թե երբ է մթնելու, որ քնենք ու մեզ քաղցած չզգանք:

Այո, կյանքը փոխվում էր: Փոխվում, մեծանում էինք նաև մենք: Մեր

կարծիքով չէր փոխվում միայն Չալիկը: Նստում էր մեր դռան շեմին ու հսկում բակում կատարվող անցուդարձը: Իսկ իրականում Չալիկը ևս փոխվել էր: Նա ոչ ոքի չէր արգելում մեր տուն մտնել, անկախ նրանից, տանը մարդ կա թե չէ: Երբ մեզնից որևէ մեկը տանն էր լինում Չալիկը իրեն հանգիստ էր զգում և տեղից չէր շարժվում: Իսկ երբ տանը մարդ չէր լինում, նա եկողի հետ կմտներ տուն, կհետևեր նրա շարժումներին, ապա կգար ու կկանգներ դռան առաջ, թույլ չէր տա նրան տնից դուրս գալ այնքան ժամանակ, մինչև մեզանից որևէ մեկը տուն մտներ: Չալիկի այդ բնավորության մասին գիտեին մեր թաղում բոլորը՝ մեծերն ու փոքրերը: Ո՞վ էր գժվել իրեն կամովին «տնային կալանքի» ենթարկել:

Վաղոն, նա որ երեխա ժամանակ անտառում ծառից կախել էր Չալիկին, մեծանալուց հետո ավելի մեծ հանցանքի մեջ բռնվել, բանտ էր ընկել: Վերադառնալով բանտից, լսում է Չալիկի մասին ու չի հավատում:

— Գրազ կգամ բոլորիդ հետ,— ասում է մի խումբ մարդկանց,—որ կմտնեմ նրանց տուն ու դուրս կգամ և որպես ապացույց տնից մի բան կբերեմ:

Ու մի օր, երբ ընտանիքով հյուր էինք գնացել, Վաղոն մտնում է մեր տուն: Չալիկը ձայն չի հանում, սակայն հետևում է նրա յուրաքանչյուր քայլին: Վաղոն սեղանի վրայից վերցնում է ժամացույցը, դնում վերարկուի գրպանը ու շարժվում դեպի դուռը: Չալիկը նրա վրա սպառնալից մի այնպիսի հայացք է գցում, որ նա տեղում քարանում է: Վաղոն ժամացույցը ընտիպված հանում և կրկին դնում է իր տեղը: Անցնում է մեկ, երկու ժամ, Վաղոյի հորդորներն իզուր են անցնում: Փորձում է հացի կտորներ գցել դուրս, որ շունը հեռանա, Չալիկը տեղից չի շարժվում: Այդպես նա մնում է մեր տանը մինչև մեր վերադարձը:

Վաղոյին սենյակի մեջտեղում կանգնած գտանք:

Նրա աչքերը, չգիտեմ զայրույթի՞ց, թե՞ ամոթխածությունից կարմրել էին:

Ինչքա՜ն չարություն կար այդ կարմիր աչքերում:

Տեսնելով մեզ, նա չիմացավ ինչպես բացատրել իր ներկայությունը:

— Ուղղակի ուզում էի շանը փորձել,—ծնկի եկավ մայրիկիս առաջ,—գողության միտք չեմ ունեցել: Արդեն մի անգամ բանտ եմ նստել: Բավական է: Աղաչում եմ, այս մասին ոչ ոքի ոչինչ չասեք:

Հավատացինք Վաղոյի խոսքերին: Նա մոռացավ անգամ «բարի գիշեր» ասել, արագ հեռացավ մեր տնից՝ շուտ-շուտ ետ նայելով հայացքով իրեն հետապնդող, սակայն հոգով խաղաղված Չալիկին:

Վաղոյի մեր տուն մտնելու մասին ոչ մեկին չպատմեցինք: Ո՞ւմ էինք զարմացնելու մեր Չալիկի արարքով: Սակայն այդ արարքից մի երկու օր էլ չանցած, Չալիկն անսպասելի հիվանդացավ... Փրկել չկարողացանք:

Մեր տնից վեր գտնվող սոճենու պուրակում, այն ծառի տակ, որի ճյուղից մի ժամանակ կախել էին մեր Չալիկին, խոր փոս փորեցինք: Փոսի շուրջը հավաքվել էին մեր թաղի բոլոր տղաները: Չալիկին թաղեցինք այդ փոսի մեջ ու կոտրված սրտով տուն վերադարձանք:

Մայրիկն աշխատանքից արդեն տուն էր եկել: Նա հետը կողպեք էր բերել դռան վրա դնելու համար:

# ԵՎ ԿԴԱՌՆԱՄ...

**ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ**

...Հիվանդացել էի:

— Թե այդ երեխու գլուխը մի բան գա, հարսիկ, ես ապրողը չեմ,—ասաց տատս ու լաց եղավ:

Աշխարհում ո՞վ ունի այսպիսի տատիկ: Բայց ափսոս, որ ոտքերը ցավում են: Եղան օրեր, երբ ցավերը դադարեցին: Այդ օրերի համար էլ ես պարտական եմ մեր ուսուցչուհուն և «Աշխատավորուհու» այն հնացած համարին, որի էջերում մեզ համար կարդաց.

— Ոտքերի մկանային ցավերը անցնում են աղաջրով:

Այդ օրը ամենքից ծածուկ աղ լցրի այն ջրի մեջ, որով տատիկի ոտքերը պիտի լվացվեր: Եվ որպեսզի իմ արարքը գաղտնի մնա, խնդրեցի մորս.

— Այս անգամ էլ ես, ես լվանամ տատի ոտքերը:

Ե՛վ մայրս, և՛ տատս չմերժեցին իմ խնդրանքը: Այդ օրվանից չէին ցավում տատիս ոտքերը: Ամեն անգամ, երբ տատիս ոտքերը լվանալու համար ջուր էր բերվում, տատս ասում էր.

— Ոտքերս միայն իմ բալեն պիտի լվանա, երբ նա է լվանում, ոտքերիս ցավն անցնում է:

...Բայց մի օր նորից սկսվեց տատիս ոտքերի ցավը ու այլևս ձեռք չքաշեց: Աղաջուրը այլևս չէր օգնում: Ամեն անգամ, երբ մոտենում եմ նրա անկողնուն ու լսում խուլ տնքոցը, շշնջում եմ.

— Համբերի՛ր, տատի՛, քի՛չ էլ համբերիր, մեծանամ բժիշկ կդառնամ ու կբուժեմ քեզ:

— Հա՛, քե՛զ մատաղ, հա՛...— պատասխանում է տատս:

Ահա թե ինչու ուզում եմ բժիշկ դառնալ : Եվ կդառնամ, թող դրանում ոչ ոք չկասկածի:

*ՍՈՒՍԱՆՆԱ ԽԱՉՅԱՆ*
*Հադրութի շրջ., գ. Էդիլլու, 5-րդ դասարան*

## ԹՈՂ ՄԱՅՐԻԿՍ ՋԱՀԵԼ ՄՆԱ

Ես չեմ ուզում,
Որ մայրիկիս նուրբ ձեռքերը
Շուտ թառամեն,
Ինչպես բույսերը աշնան:

Ես չեմ ուզում
Իմ մայրիկիս նուրբ այտերը
Տատի կնճռոտ այտեր դառնան:

Թող մայրիկս ջահել մնա,
Ձյուն չնստի իր մազերին,
Որ մայրերը չծերանան՝
Պետք է օգնել մայրիկներին...

*ՇՈՒՇԱՆԻԿ ԳՐԻԳՈՐՅԱՆ*
*Լենինական, Մ. Մազմանյանի անվ. դպր., 7-րդ դաս.*




ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# ԹԻԹԵՌԸ ՉԱԼԱՐԵՑ

Չէին սվսվում
Ծառերը բակի:
Մարել էր զվարթ
Կարկաչն առվակի:

Խամրել էր խոտը,
Դեղնել էր,
Պառկել:
Ծաղիկներն էին
Աչքերը փակել:

Սսկվել էին,
Լռել,
Քարացել...
Միայն մի շարժուն
Գույնդ էր մնացել.

Արևն էր
Դանդաղ ելնում, չէր խաբում,
Բայց հենց նա էր, որ
Կրակ էր թափում:

Եվ ամենքը՝
Հավք ու միջատ,
Գել-գազան
Պահվել էին
Խորշերի մեջ զանազան:

Նստել էին
Իրենց բախտը սգալով,
Տնքում էին
Աղերսելով ու լալով.



Իսկ թիթեռը ուրիշ կերպ էր մտածում.
Երկնքի մեջ ոչ մի հավք չի թևածում,
Անտառի մեջ չի շարժվում ոչ մի ճյուղ,
Գոնե մի «ճիվ»,
Ծռինչ,
Կամ մի կարկաչյուն:

Ոնց կլինի,
Ոնց կլինի,
Ախր ես
Հո չե՞մ ողբա
Իմ կարճ կյանքս
Սրանց պես:



Ու թիթեռը չալարեց,
Ծիգ արեց, թևահարեց...

Նրա ճիգից ու թռիչքից,
Թևիկներից նրա թեթև
Զնչին մի շունչ
Ծնվեց օդում
Ասես քամու թաքուն մի հեք:

Ծաղիկն այդ շունչը փոխանցեց խոտին.
Խոտը փոխանցեց թփին իր մոտի.
Թուփն էլ մեկուսի, մենավոր ծառին,
Ծառը՝ անտառին...

Անտառը շնչեց,
Անտառն արթնացավ:





— Օ՜ֆ...
— Օ՜ֆ...
— Օ՜ֆ...
— Մի քիչ՝ օդ...
— Մի քիչ՝ զով...
— Մի քիչ՝ հով...

— Ես ո՞նց դիմանամ,—
Լալիս էր մուկը;—
Երբ նույնիսկ կատուն չի դիմանում:

— Ես ո՞նց դիմանամ,—
Լալիս էր կատուն,—
Երբ նույնիսկ շունը չի դիմանում:

— Ես ո՞նց դիմանամ,—
Լալիս էր շունը,—
Երբ նույնիսկ արջը չի դիմանում:

— Ես ո՞նց դիմանամ,—
Լալիս էր արջը,—
Երբ որ անտառն էլ չի դիմանում:
— Օ՜ֆ...
— Օ՜ֆ...
— Օ՜ֆ...
— Մի քիչ՝ օ՜դ...
— Մի քիչ՝ զո՜վ...
— Մի քիչ՝ հո՜վ...

Զեփյուռս ո՞րն է
Քամի բարձրացավ...
Եվ ամենքը.
Հավք ու միջատ,
Գել-գազան
Դուրս թափվեցին ծակուծուկից զանազան.
— Ինչպե՞ս եղավ, չարաբաստիկ այս ժամին
Մեզ փրկության հասավ ջահել այս քամին:

Անտառը ասաց.
— Հարցրեք ծառին:

Իսկ ծառը ասաց.
— Հարցրեք թփին:

Իսկ թուփը ասաց.
— Հարցրեք խոտին:
Իսկ խոտը ասաց.
— Հարցրեք ծաղկին:

Ծաղիկը ասաց.
— Հարցրեք թիթեռին...

Թիթեռն էլ նստած իր շքեղ թառին,
Ասաց.
— Հարցրեք հզոր Անտառին...





Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



# Նրա ծածկանունը «Երիցուկ» էր

Զինան ծնվել էր Լենինգրադում: Ավարտել էր յոթներորդ դասարանը և քաղաքային պիոներպալատում մասնակցում էր բալետի խմբակի պարապմունքներին: Շատ էր սիրում բալետը: 1941 թվականի ամառային արձակուրդներին քրոջ հետ եկել էր Բելոռուսիայի Զուի գյուղում հանգստանալու: Հենց այստեղ էլ վրա հասավ պատերազմը: Նրանք փորձեցին տուն վերադառնալ, սակայն հնարավոր չեղավ, շրջապատման մեջ ընկան և ստիպված ետ վերադարձան:

Հիտլերականների սանձարձակությունների, սպանությունների, մարդկանց կողոպտելու դեմ որևէ կերպ պայքարելու հնարավորություն չունենալով, Զինան տատից գաղտնի գիշերները թռուցիկներ էր գրում ու կպցնում պատերին: Դպրոցական ձեռագրով գրված այդ թռուցիկները գրավեցին ոչ միայն ֆաշիստների, այլև տեղում գործող «Պատանի վրիժառուների» խմբակի անդամների ուշադրությունը:

Ո՞վ էր այդ աղջիկը, որ միայնակ էր պայքարում թշնամու դեմ: Կազմակերպության անդամները գտան նրան:

— Քեզ ո՞վ է սովորեցրել թռուցիկներ գրել:

— Ոչ ոք,— պատասխանեց Զինան:— Չեմ կարողանում դիմանալ: Ես տեսա, թե նրանք ինչպես ավերեցին Սիրոտինսկի շրջանի Բորսուկի գյուղը, գյուղացիներին լցրին մի տան մեջ ու պատուհանից ռումբեր նետեցին, անգամ երեխաներին չխղճացին: Սպանեցին բոլորին, նաև նրանց, ովքեր կիսայրված դուրս էին նետվում պատուհանից...

Զինային ընդունեցին «Պատանի վրիժառուներ» խմբակի անդամ: Մինչ այդ նա միայնակ էր գործում: Այժմ կազմակերպության մյուս անդամների հետ ոչնչացրին թշնամու չորս ավտոմեքենա, այրեցին ավիառումբերով ու վառելիքի բաքերով մի գնացք, պայթեցրին էլեկտրակայանը, պարտիզաններին գնդացիր, երեք արկղ գնդակ, հրացաններ ու նռնակներ հասցրին:

«Երիցուկը»—այս էր նրա ծածկանունը, թույն լցրեց ֆաշիստների համար պատրաստված ճաշի մեջ: Մի քանի ժամ անց ֆաշիստական սպաները ծանր թունավորումով տեղափոխվեցին հիվանդանոց: Իսկ Զինային, որ խոհանոցում աման լվացող էր, մյուս աշխատողների հետ տարան գեստապո:

— Կե՛ր, կե՛ր, աղջի՛կ,— պահանջում էր

էնէսական սպան և թունավոր սուլյով ափսեն խոթում Զինայի ձեռքերի մեջ։— Շատ-շատ լավ սուպ...

Նա լուռ վերցրեց գդալը և երկու-երեք գդալ կերավ...

— Լավ սուպ է, ճի՞շտ է,— աչքերը նեղացրեց ֆաշիստը, չարախնդաց,— վա՜խ- վա՜խ- վա՜խ։ Վերջ, հիմա աղջկա վերջը կգա։

Զինան հազիվ տուն հասավ, ստամոքսի անտանելի ցավերից գալարվում էր։ Նա հրաշքով փրկվեց։ Առավոտյան նրան փոխանցեցին պարտիզանական ջոկատի հրամանատար Մարկիյանովի կարգադրությունը. «Անհապաղ փախչել անտառ»։

Պարտիզանական ջոկատում Զինան կարճ ժամանակում տիրապետեց զենքերի գործածության, սովորեց դիպուկ կրակել։

Պարտիզանները գիշեր-ցերեկ թշնամիներին հանգիստ չէին տալիս։ Զավթիչները չէին համարձակվում անտառ մտնել։ Նրանց քիչ վնաս չէին հասցնում «Պատանի վրիժառուները»։ Սակայն գտնվեց մի մատնիչ։ Կազմակերպության մի խումբ անդամներ բռնվեցին ու գնդակահարվեցին։

1943 թվականի հոկտեմբերի վերջին, երբ պարտիզանական ջոկատին հայտնի դարձավ, որ գերմանացիները բանտարկել են պատանի վրիժառուների ևս մի նոր խումբ, Զինան գնաց Օբոլի գյուղը, որպեսզի հանդիպի կապավոր Վերա Լուզգինայի հետ։ Ճանապարհին՝ Մոստիշչա գյուղի մոտերքում ոստիկանները բռնեցին նրան։

— Դե, կերածդ ծեծից բավարարվա՞ծ ես,— հարցրեց ֆաշիստը։— Քեզ կշարունակեն ծեծել այնքան, մինչև խոստովանես, թե որտեղ են քո պարտիզանները։ Եթե խոսես, կապրես...

Փողոցով անցնում էին գերմանական տանկեր։ Սպան մոտեցավ պատուհանին և ասաց.

— Նայի՛ր, թե ինչպիսի ուժ ունենք մենք։

Զինան հենց այդ պահին նկատեց սեղանին դրված ատրճանակը, նա ակնթարթորեն մոտեցավ, իջեցրեց արգելակիչը և գնդակահարեց սպային։ Ներս ընկավ հերթապահը և դիմահար կրակոցից նա էլ ընկավ։

Աղջիկը նետվեց դուրս, արագ անցավ միջանցքը և շենքից դուրս գալով, վազեց դեպի գետը, որից քիչ հետո կանաչին էր տալիս անտառը։ Նա վազում էր ամբողջ ուժով և մտովի համոզում էր իրեն. «Դե մի քի՜չ էլ, Զի՛նա, հրեն անտառը՝ քո փրկությունը»։

Հենց այդ՝ տեղ նրա ոտքերը ցավից դաղվեցին։ Եվս հինգ քայլ անելուց հետո նա բերանքսիվայր ընկավ... խոտերին...

Զինան ուշքի եկավ Պոլոցկի փոքրիկ ու ցուրտ բանտախցում։ Ոտքերը գնդակներից ծակծկված, ասես խորովվում էին կրակի մեջ։

Նրան գազանաբար տանջում էին հարցաքննությունների ժամանակ։ Հերթական հարցաքննությունից հետո նա հաղթահարելով ցավերը, մի կերպ սողաց մինչև բանտախցի դուռը, մեխով խզբզեց հյուսիկներով մի աղջիկ և տակը գրեց. «Դատապարտված է գնդակահարության»։

Նրան գնդակահարեցին արշալույսին։ Զինաիդա Պորտնովային հետմահու շնորհվեց Սովետական Միության հերոսի բարձր կոչում։

## Գիտե՞ք որ...

● 1980 թվականի հուլիսի 15-ին պատմական Կլյազմա գետի ափին տոնակատարությամբ կբացվի Միջազգային երիտասարդական օլիմպիական ճամբարը: Երիտասարդները երեք շաբաթ կապրեն իրենց համար կառուցված այդ ճամբարում: Նրանց համար կառուցված են խաղահրապարակներ, հանգստի կետեր, սեփական ռադիո-հեռուստատեսային կապ: Նրանք մինչև անգամ անհատական թարգմանիչներ ունեն: Ազատ ժամերին կարող են էքսկուրսիայի մեկնել քաղաքի տեսարժան ու պատմական վայրերը, հանդիպումներ ունենալ սովետական երիտասարդության հետ, օգտվել օլիմպիադայի մշակութային ծրագրից:

● Մոսկովյան ճամբարը դառնալու է սպորտի սիրահար 1500 երիտասարդների հավաքատեղի: Ճամբարի հիմնական նպատակը խաղերին մասնակից երկրների երիտասարդության մերձեցումն է, որն իր հերթին պետք է նպաստի նրանց համատեղ պայքարին՝ հանուն խաղաղության, բարեկամության ու երջանկության...

● 22րդ օլիմպիական խաղերի ժամանակ իրենց դռները կբացեն Մոսկվայի մշակութային օջախները: Թատրոնների, համերգասրահների, կինոդահլիճների բեմերը կտրամադրվեն Սովետական Միության և աշխարհի լավագույն ու ճանաչում գտած երգչախմբերին, տարբեր ազգերի վարպետ կատարողներին: Հայաստանից այդ պատվին է արժանացել ՍՍՀՄ ժողովրդական արտիստ Հ. Չեքիջյանի ղեկավարած Հայաստանի պետական երգչախումբը:

# Ի՞ՆՉ ԷՐ ԵՐԱԶԱԾԸ

*ՀՐԱՆՏ ԱՂԱՍԱՐ*

Երեկոյան բուք սկսվեց: Ողջ գիշեր քամին ոռնում էր կատաղությամբ, ձյան երեսից սրբում նրա սառած հատիկները և փոշի դարձրած՝ քշում հեռուները: Գյուղը նմանվում էր լեռնացած ալիքներով շրջապատված կղզու:

Գիշերվա կատաղի բքից հետո առավոտը արտակարգ խաղաղ էր, երկինքը՝ կապույտ, օդը՝ ջինջ ու թափանցիկ:

Համատարած ճերմակի վրա, որը փայլում էր վաղորդյան արևի ճառագայթներից, մի սև կետ էր երևում: Գյուղից դուրս էր եկել ութ տարեկան մի տղա և բռնել հարևան գյուղը տանող ճամփան:

Տղան հացենու փայտից մի ձեռնափայտ ուներ, որին հեծել էր: Նրա երևակայական ձին ձյան շերտի վրա մի բարակ հետագիծ էր թողնում, իսկ ձիու երկու կողմերին՝ տղայի բոբիկ ոտնատեղերն էին շարվում:

Նրա ոտքերը սառնություն չէին զգում, այրվում էին ցրտից:

Ո՞վ էր այդ տղան և ի՞նչն էր նրան ստիպել ձյուն-ձմռանը այդպիսի ճամփորդություն կատարել, երբ նրա հասակակիցները դեռ նոր էին պատրաստվում դպրոցի ճամփան բռնել:

Տղան ութ տարեկան էր, անունը Հրայր, հայրը մահացել էր, ընտանիքն ապրում էր քաղաքում: Ամռանը մայրը նրան ուղարկեց գյուղ՝ տղայի ամուսնացած քրոջ մոտ, խոստանալով ամռան վերջերին գալ Հրայրին տանել քաղաք ու դպրոց ուղարկել:

Ամառը վերջացավ, իսկ մայրը չկար ու չկար: Հրայրը աղերսում էր քրոջն ու փեսային իրեն մոր մոտ տանել, իսկ նրանք համոզում էին էլի սպասել, ուր որ է մայրիկը ինքը կգա, հենց գործերը վերջացնի՝ կգա:

Վերջապես հասավ նաև դպրոց գնալու ժամանակը, և Հրայրին տեղավորեցին գյուղական դպրոցում: Նա դպրոց էր հաճախում ոտաբոբիկ, ամռան ամիսներին մաշվել էին տրեխները: Աշնանը դեռ ոչինչ, ձմռանը դպրոցի ձյունոտ ճանապարհին ոտքերը մրսում էին, հետո դասարանում՝ այրվում: Սկզբում շատ էր տանջվում, հետո ոտքերի մաշկը կոշտացավ և կարծես

ցրտադիմացկուն դար-ձավ:

Դժվար տարիներ էին: Աղքատ էր նաև քրոջ ընտանիքը: Կաշի չէր ճարվում: Քրոջ երեխա-ները նույնպես ոտաբո-բիկ էին և համարյա կի-սամերկ: Քույրն ու նրա ամուսինը չընդդիմացան, երբ Հրայրն ուզեց գնալ հարևան գյուղը՝ հորա-քրոջից տրեխներ խընդ-րելու:

Որքա՜ն լավը պիտի լինեին իր ոտքերի չա-փով գործված սրածայր տրեխները, մտածում էր Հրայրը, հուսալով, տը-րեխների հետ գուցե գուլպաներ էլ նվիրեն:

Այս մտքերով տարված նա անցավ դժվարին ճամփան և վերջապես հայտնվեց հորաքրոջ դռանը: Հորաքույրը ա-նակնկալից շվարած նա-յեց նրան, հետո հասավ, գրկեց, ջերմ-ջերմ համ-բուրեց, ապա լալով պատմեց, որ իր տղան՝ Հարությունը գնացել էր քաղաք, հանդիպել էր Հրայրի քույր Անուշին, և Անուշը խնդրել էր Հարությունին, մյուս ան-գամ քաղաք գալիս Հը-րայրին իր հետ բերել:

— Մագթա՛ղ հորա-քույր, բա Թյունի դային մայրիկիս չի տեսե՞լ,— հարցրեց Հրայրը:

— Չէ՛, մատա՜ղ լի-նեմ քեզ, մենակ Անուշին է տեսել գործատեղը: Ա-նուշն ասել է, որ մայրդ հիվանդ է ու քեզ է ու-զում, — պատասխանեց հորաքույրը և սկսեց ա-վելի սաստիկ լալ: Նրա հետ աղիողորմ լալ սկը-սեց նաև Հրայրը:

— Լաց մի՛ լինի, Հը-րա՛յր ջան, հորաքույրը քո ցա՜վը տանի,—հան-գըստացնում էր հորա-քույրը:

Բայց Հրայրը մոռացել էր երազած տրեխները... Նախազգում էր կատար-վածը, և ոչինչ, ոչինչ այլևս չէր կարող եր-ջանկացնել նրան:

*ՆԿ. ԱՐՏԱՎԱԶԴ ՅԱՐԱԼՅԱՆԻ*





# ՀՆԱԳՈՒՅՆ ՕԼԻՄՊԻԱԴԱՆԵՐԻ ՎԵՐՋԻՆ ՉԵՄՊԻՈՆԸ

IV դ. սկզբներին հելլենիստական երկրներում դառնալով պետական կրոն, քրիստոնեությունը պայքար սկսեց օլիմպիական խաղերի կազմակերպման դեմ, սակայն դժվար էր սպանել ուժի և գեղեցկության նկատմամբ մարդկանց դարավոր հավատը, մոռացության տալ «առողջ մարմին՝ առողջ հոգի» իմաստուն ասացվածքը: Չնայած եկեղեցու կատաղի պայքարին, օլիմպիական խաղերը շարունակվում էին կազմակերպվել, նախկինի նման վերածվելով համաժողովրդական միջոցառման, դառնալով ուժի, հմտության, գեղեցկության հանդիսատոն: Ժամանակն ասես կանգ էր առնում. արքաները դադարեցնում էին զավթողական պատերազմները, զորավարները՝ վայր դնում սրերը, վաճառականները՝ հետաձգում առևտրական անհետաձգելի գործերը, պոետները՝ ներբողում միայն հաղթած մարզիկներին: Վերջին օլիմպիական խաղերից մեկի հաղթողներից էր Հայաստանի ապագա թագավոր Վարազդատը:

Փավստոս Բուզանդը գրում է, որ Վարազդատը Պապ թագավորի եղբորորդին էր, Արշակունի տոհմից: «Նա տարիքով մանուկ էր, արիասիրտ, հզոր ձեռքերով, քաջ սրտով...» — ասում է պատմիչը: Իսկ Մովսես Խորենացին պատմում է, որ Վարազդատը ստիպված էր եղել գնալ Հունաստան՝ ազատվելու պարսից Շապուհ արքայի հալածանքներից: Վարազդատի անունը շուտով թնդաց Հունաստանում: Նախ նա հաղթող հանդիսացավ Պիսա քաղաքում անցկացված բռնցքամարտիկների մրցությունում: Վարազդատն աչքի չէր ընկնում մարմնեղությամբ և բարձր հասակով. նրա ուժն ու հզորությունը մարզվածության, մկան-

ների համաչափ զարգացման, արագաշարժության ու ճկունության մեջ էր: Մովսես Խորենացին գրում է, որ Արեգ կոչված քաղաքում Վարազդատը կես օրվա ընթացքում մի քանի առյուծ կոտորեց: Ապա աչքի ընկավ ըմբշամարտում՝ դառնալով օլիմպիական խաղերի հաղթող: Վարազդատը հավասարապես տիրապետում էր սպորտի և ռազմական արվեստի բոլոր ձևերին: Մասնակցելով լանգոբարդների դեմ մղվող պատերազմին, Վարազդատը մարտի ժամանակ ընկնում է հակառակորդի հինգ ռազմիկների շրջափակման մեջ: Սկսվում է անհավասար, կատաղի ըմբամարտ, որտեղ Վարազդատը իր ամուր բազկի, ինքնատիրապետման և քաջության շնորհիվ բոլորին էլ սրատում ու սրախողխող է անում: Վարազդատը նաև անվրեպ նշանառու էր: Թշնամու բերդերից մեկի գրավման ժամանակ, նա տասնյոթ նետով՝ տասնյոթ բերդապահ զինվոր է խոցում: Շարունակելով իր պատմությունը Մովսես Խորենացին գրում է, որ գալով Հայաստան, Վարազդատն աչքի ընկավ առաջին իսկ մարտում: Հինգ թշնամիներ, որոնց պատմիչը ավազակներ անվանում, սարսափահար փախչում են, հանդիպելով հայոց նորընծա արքայի անվրեպ սրին: Դեպքը տեղի է ունենում Բարձր Հայք նահանգի Դարանաղի գավառում, Եփրատի ափին: Փախչող ավազակներն անցնում են գետը, իրենց ետևից խորտակում փայտյա թեթև կամուրջը; սակայն Վարազդատը թռչում անցնում է Եփրատը: «Ավազակները զարհուրած վար գցեցին զենքերը և անձնատուր եղան»,—գրում է պատմիչը: Մովսես Խորենացին Հայոց արքայի այդ ցատկը համեմատում է հույն պատմագիր Եվսեբիոս Կեսարացու «Ժամանակագրության» մեջ հիշատակվող լակոնացի Քիոնեսի 22 կանգունանոց (մեկ կանգունը հավասար է մոտ 40 սմ) և Տրոյայի պատերազմում Սկամանդրոս գետի վըրայով Աքիլլեսի նշանավոր թռիչքների հետ:

Վարազդատը հայոց գահին թագավորեց ընդամենը 4 տարի (374—378): Պատմիչները՝ և՛ Փավստոս Բուզանդը, և՛ Մովսես Խորենացին գըրում են, որ Վարազդատը լինելով հմուտ մարտիկ ու քաջ զինվոր, անվարժ էր թագավորական գործերում: Եվ իսկապես, Վարազդատը, որը սովոր էր հակառակորդին հաղթել բաց մարտում, ազնիվ պայքարով, չէր կարող իշխել անհաստատ, նախարարների երկպառակություններից ավելի խարխլվող, պարսկական և հունական խարդավանքների ցանցն ընկած Արշակունյաց գահին, որի վրա գոյատևելու համար ավելի շուտ հարկավոր էր լինել լարախաղաց, քան թե օլիմպիական խաղերի հաղթող: Մովսես Խորենացին գրում է, որ Վարազդատին ետ կանչեց հունաց կայսրը՝ դժգոհ նրա քաղաքականությունից, իսկ Փավըստոս Բուզանդը նրա հեռանալու պատճառը համարում է նրա դեմ Մանուել Մամիկոնյանի բարձրացրած ապստամբությունը: Սակայն անհաջող գահակալությունը չի կարող ստվերել օլիմպիական խաղերի հաղթողի, բազմակողմանի մարտիկի, արիասիրտ ռազմիկի՝ Վարազդատի փառքը: 394-ին եկեղեցին վերջապես հասավ օլիմպիական խաղերի արգելմանը: Պահպանվել է, այսօր էլ կանգուն է օլիմպիական չեմպիոնների մարմարյա հաղթատախտակը, որի վերջին տողում Վարազդատի՝ մոտ 1500 տարով ընդհատված օլիմպիական խաղերի աշխարհին հայտնի վերջին հաղթողի անունն է:

*ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*



*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*

# ԱՍԵՍ ՀՐԴԵՀ ԷՐ

Ապրիլյան մի առավոտ ես շրջակա բարձունքներից դիտում էի Դեբեդի հովիտը: Օրն ամպամած էր, սակայն հովիտը շողշողում էր ծիածանի բոլոր գույներով: Ասես հրդեհ էր բռնկվել դաշտերում:

Այդ դեղձենին էր ծաղկում հարյուրավոր հեկտարների վրա: Ես գիտեի, որ անբերրի տափաստաններում ծաղկուն այգիներ է հիմնել սոցիալիստական աշխատանքի հերոս Բագրատ Վարդանյանը և ցանկացա ծանոթանալ նրա հետ, տեսնել նրա արածը:

Հեշտ չէ արևից խանձված, անբերրի հողը ոռոգելի դարձնել, ընտրել պտղատու ծառերի հեռանկարային տեսակները, մշակել դրանք, ստանալ առատ բերք:

Պետական պարտավորությունները հաջողությամբ կատարելու, այն գերակատարելու հետ, այդ ռոմանտիկ մարդը հետաքրքիր փորձեր կատարելու ժամանակ էլ էր գտնում: Համոզվելով, որ Դեբեդաշենի պայմանները միանգամայն նպաստավոր են մերձարևադարձային որոշ բույսերի աճեցման համար, նա սևծովյան ափերից մեծ քանակությամբ մերձարևադարձային բույսերի սերմեր ու տնկիներ բերեց և իր ստեղծած պետական տնտեսություններում աճեցրեց:

Սկզբում դաշտապաշտպան անտառաշերտեր է ստեղծում, կենսածառի ու հեզաճկուն նոճու ընկերակցությամբ: Հետո ստեղծում է մերձարևադարձային բույսերից կազմված առաջին գեղատեսիլ պուրակը, այնուհետև երկրորդը, երրորդը:

Շատ բուսաբանական այգիներ կը նախանձեն «Զեյթուն» սովխոզի ութ հեկտարանոց պուրակին: Մշտադալար ի՞նչ ծառատեսակներ ասես, որ այստեղ չես հանդիպի: Թվում է, թե սևծովյան ափերի բնապատկերի մի փոքրիկ պատառիկ է հանգրվանել այստեղ և ահա, ուր որ է, մշտադալար ծառերի սաղարթների միջից արծաթին կտա ծովի հանդարտ հայելին:

Վեհորեն դեպի երկինք են խոյանում վերձիգ, բարձրահասակ, խիստ ջերմասեր նոճիները: Մուրթաթ մայրիները առանձնակի հմայք ու գեղեցկություն են տալիս զբոսայգուն: Եվ սրանք բոլորը խիստ քմահաճ են ու ջերմասեր: Պահանջում են պարզ, արևոտ ու տաք եղանակ, տեղումների առատություն տանել չեն կարող: Ճապոնական կրիպտոմերիայի գանգուր ու թափանցիկ սաղարթը սքանչելիորեն ներդաշնակում է շրջապատի հետ: Այս բույսերն էլ խիստ նազուկ են, ջերմասեր ու պահանջկոտ:

Մշտադալար դափնեկեռասը, ազնիվ դափնին և փայլուն սրնգենին այստեղ չեն ցրտահարվում, առատորեն ծաղկում և պտղաբերում են:

ԳԵՂԵՑԻԿԸ ՔՈ ԿՅԱՆՔՈՒՄ

# ԲՈՒՆԿՎԵԼ ԴԱՇՏԵՐՈՒՄ...

Նազուկ ու քնքուշ են նաև ճապոնական էրիոբոտրիան, մշտադալար կաղնիները, պասանիան, խցանային կաղնին: Դրանք սովոր են ծովային մեղմ ու խոնավ կլիմային, սակայն այստեղ լավ են հարմարվել և փարթամորեն են աճում: Հողատար ձեռքը լրացնում է կլիմայի անհամապատասխանության հետևանքով առաջացած կենսական պայմանների պակասը:

Շրջում եմ պուրակի ծառուղիներով ու կածաններով և կանգ եմ առնում զարմացած. մի՞թե սա արմավենի է: Հովհարաձև, խոշոր տերևները հպարտորեն տարուբերվում են թեթևակի քամուց: Այո՛, դա հռչակավոր խամերոպսն է, միջերկրածովյան բնակիչը, որին սովոր ենք տեսնել ջերմատներում: Իսկ այստեղ աճեցնում են բաց երկնքի տակ: Դեռևս ոչ մի բուսաբանի կամ կանաչապատման մասնագետի չի հաջողվել մեր հանրապետության պայմաններում արմավենի աճեցնել բաց երկնքի տակ:

Բագրատ Վարդանյանը անսքող հպարտությամբ ցույց էր տալիս ճապոնական իլենու, ազնիվ դափնու, խոշորածաղիկ մագնոլիայի, տունգի ծառերը, գիգանտ սեքվոյայի մշտադալար թփերն ու սլացիկ ծառերը, որոնց աճեցման համար տանջվել է շաբաթներ ու ամիսներ: Սկզբում սերմերը ծլեցրել են ջերմատանը, հետո աստիճանաբար սովորեցրել դրսի ցրտին ու արևին և վերջապես դրել բաց երկնքի տակ:

Մի քանի տարի անց անտառային տնտեսության պետական կոմիտեի Կիրովականի անտառփորձակայանի ղեկավարությունը որոշեց Իջևանում ստեղծել հատուկ դենդրարի (ծառաստան) մերձարևադարձային կուլտուրաների մշակության համար: Իջևանի և Բագրատաշենի կլիմայական պայմանները քիչ են տարբերվում: Բագրատ Վարդանյանի հարուստ փորձը օգնեց անտառագետ-գիտնականներին լուծելու Հայաստանի պայմաններում մերձարևադարձային բույսերի մշակման հնարավորության հարցը, որ մինչ այդ համարվում էր անհնարին:

Այսօր կենդանի չէ հիշածս գեղեցիկ գործի հեղինակը: Սակայն երբ երեկոն է իջնում Դեբեդի հովտի վրա, փչում է մեղմ զեփյուռը, «Դեբեդ» սովխոզի ընդարձակ այգիներում մեղմ սոսափում են երկրագնդի ամենատարբեր աշխարհամասերից բերված հարյուրավոր էկզոտիկ ծառերն ու թփերը: Թվում է, թե մի կախարդական ու հմայիչ սիմֆոնիա է հնչում, սիմֆոնիա, նվիրված մարդու խիզախումներին, նրա համառությանը, կամքին ու աշխատասիրությանը: Եվ թվում է, թե այդ սիմֆոնիային չափ է տալիս նրա հեղինակը՝ սոցիալիստական աշխատանքի հերոս Բագրատ Վարդանյանը:

# ԼՈՒՍԻՆԵ ԶԱՔԱՐՅԱՆ

## Մեր տոհմիկ երգը

Սիրելի՛ պիոներներ.

Շատ ուրախ եմ, որ ինձ առիթ է ընձեռվում լինելու «Պիոներ» ամսագրի հյուրը և իմ սրտի խոսքն ուղղելու նրա ընթերցողներին։

Նպատակահարմար եմ գտնում խոսել ձեզ հետ մեր ազգային տոհմիկ երգի մասին, որը դուք եք, որ պետք է պահպանեք մեզանից հետո, և նույն մաքրությամբ փոխանցեք ձեզ հաջորդող սերնդին։

Իմ երգացանկում տեղ են գտել արևմտաեվրոպական, ռուսական և այլ կոմպոզիտորների մի քանի հարյուր երգեր։ Դրանք ես սիրով կատարում եմ իմ համերգների ընթացքում՝ թե՛ այստեղ՝ մեր երկրում, թե՛ արտասահմանում։ Սակայն իմ սրտին և հոգուն ավելի մոտ են մեր միջնադարյան գոհար շարականները, հոգեզմայլ տաղերն ու մեղեդիները, ինչպես նաև մեր դասականների՝ Կոմիտասի, Եկմալյանի և մյուսների ստեղծագործությունները։ Դրանց մեջ խտացած է մեր ժողովրդի դարավոր տառապալից պատմությունը՝ իր անկումներով ու խիզախումներով, մի խոսքով՝ «ոգին մեր ցեղի, և նրա հոգու ամենամաքուր հայելին», ինչպես բնութագրել է մեծ Կոմիտասը։

Հին է մեր տոհմիկ երգը՝ ինչպես մեր ժողովուրդը, հարուստ ու քաղցրահնչյուն է, պարզ ու անպաճույճ, բայց և ինքնատիպ, հոգեթով ու բազմախորհուրդ, ինչպես մեր տաճարներն ու խաչքարերը, հոգեխռով ու թախծոտ են, բայց և հերոսական ու լավատեսությամբ լի, ինչպես մեր ժողովուրդն ինքը։

Մանուկ հասակից ճանաչե՛ք, ըմբոշխնեցե՛ք և սիրեցե՛ք մեր երգի կենարար ուժն ու քաղցրությունը, որպեսզի կարողանաք այն տարբերել ժողովրդական երգի անվան տակ տարածված, բայց մեր բուն ժողովրդական երգ-երաժշտության հետ կապ չունեցող անարվեստ, անճաշակ երգերից։

Մեր տոհմիկ երգը ձեզ կօգնի ճանաչելով և սիրելով ազգայինը՝ նրա միջոցով ճանաչել ու սիրել նաև համամարդկայինը։

Սիրեցե՛ք մեր տոհմիկ երգն ու երաժշտությունը։ Սիրեցե՛ք և մեր քաղցրահնչյուն մայրենին, սիրեցե՛ք և աչքի լույսի՛ պես պահեցեք մեր դարավոր մշակույթի արժեքները։

Մաղթում եմ բոլորիդ հաջողություններ ուսման մեջ և փայլուն ապագա։

*ԼՈՒՍԻՆԵ ԶԱՔԱՐՅԱՆ*
*ՀՍՍՀ ժող. արտիստուհի,*
*պետական մրցանակի դափնեկիր*

*Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ*

# ԼԵԳԵՆԴ

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

Պանը ուներ այծի եղջյուր
Ու այծի մարմին,
Սոսկում էին, Պանից փախչում
Տղամարդ թե կին։

Ու անտառով մի օր անցավ
Սիրինգս դեռատին,
Ծաղկում էին ծաղիկ ու ծառ,
Որ նա նկատի։

Պանը տեսավ, սիրեց Պանը,
Ուզեց մոտենալ,
Ա՜խ, կունենար նավ կին տանը,
Լավ ընկեր, լավ մայր։

Բայց աղջիկը վախից ճչաց,
Ո՞վ չի վախենա,
Այծի մարմին, այծի եղջյուր
Թե մարդն ունենա։

— Կանգնի՛ր դու, սե՜ր,
Դու մա՜յր, դու կի՜ն,—
Պանն էր աղերսում,
Տես, տխրում է Պանի հոգին
Ու սիրտն է մրսում։

Եվ աղջիկը վազեց՝ փրկե՜ք,
Վազեց և Պանը,
Երբ որ գետը ճամփան փակեց,
Ինչպես ուռկանը։

Աղերսագին ճիչն է հնչում,
Որպես եղերերգ,
Աղջիկն արդեն Պանի գրկում
Դարձել էր եղեգ...

Եվ մի սրինգ շինեց Պանը
Դալար եղեգից
Ու նվագեց... նրա ձայնը
Լսելի է ինձ։





Լրացավ մանկագիր ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆԻ ծըննդյան 60-ամյակը։ Խմբագրությունը շնորհավորում է սիրելի գրողին, ցանկանում նրան երկար տարիների կյանք և ստեղծագործական հաջողություններ։

# ԻՍԿ Ո՞Վ ՉԷՐ ՈՒԶՈՒՄ ԱՊՐԵԼ

Այդ օրը, էսէսի լեյտենանտը ավելի անհանգիստ ու նյարդային էր, անընդհատ լսվում էր նրա սպառնալի ձայնը.

— Արա՛գ, արա՛գ աշխատեք, կեղտո՜տ խոզեր։

Լեյտենանտը թորբոքված ցատկում էր քարից քար ու պատահած գերուն հարվածում ոտքով կամ հրացանի խզակոթով։ Նույնիսկ պահապան զինվորները տագնապած միմյանց էին նայում, ուսերը զարմացական թոթվելով։

— Դե, արա՛գ, արա՛գ... ի՞նչ ես կրիայի պես քայլում,—նորից բղավեց լեյտենանտն ու ոտքով հարվածեց խճաքար շալակած գերուն, վերջինս հավասարակշռությունը կորցնելով ընկավ, շալակի պարկը պատռվեց, միջի խճաքարերը շաղ եկան շուրջը, մի մասն էլ աղմկելով գլորվեցին դեպի ձորը։

Մոտիկ գտնվող գերին տեսնելով, որ ընկածը չի կարողանում ոտքի կանգնել, նետվեց օգնության, որ բարձրացնի, լսվեց ավտոմատի մի կարճ կրակահերթ։ Գերին ընկավ։

Ուրալցի Կուպրիանովը թռավ մի ժայռաքարի և բղավեց.

— Եղբայրնե՛ր, եկե՛ք քարերով սատկեցնենք այդ շանը, թե չէ մեզ բոլորիս կսպանի...

Նա չհասցրեց գետնից քար վերցնել, երբ մի երկար կրակահերթ էլ նրան գետին տապալեց, իսկ մի քանիսն էլ տարբեր տեղերից վիրավորվեցին։

Այդ ժամանակ պահակները այս ու այն կողմերից հրամայում էին գերիներին հանդարտվել և շարունակել աշխատանքը։ Գերիներից մեկը, պահակներից աննկատ, թիկունքից մոտեցավ լեյտենանտին ու հրեց։

— Դե, դո՜ւ էլ սատկիր...—բղավեց։

Լսվեց մի սուր ճիչ, որը հետզհետե մարեց ձորի խորքում։

Մոտ վազեց եֆրեյտորը, տեղնուտեղը գնդակահարեց հանդուգն գերուն։

Այդ խառնակ պահին, երկու թեթև մարդատար ավտոմեքենաներ մոտեցան քարհանքին։ Գեներալն էր ժամանել։

Ֆելդֆեբելը զեկուցեց կատարվածի մասին։

— Շարե՛լ,— հրամայեց գեներալը։

Շարվեցին։ Գերմանացի զինվորները ձորից դուրս բերեցին ջախջախ-

ված լեյտենանտի դին: Զորից դուրս հանեցին չորս սպանվածներին ևս ու հինգ վիրավորներին:

— Վիրավորնե՛րն էլ շարք կանգնեն,— հրամայեց գեներալը:

Ինչնունվեց հոգի շարվեցին:

— Դատաստան պիտի տեսնենք մեզ հետ,—շշնջաց էջմիածնեցի Մնացականը:

Գերիները սկսեցին միմյանց մեջ բաժանել ով ինչ հոգեպահուստ ուներ:

— Ա՛ռ,—իր կողքինին դիմեց մեկը,—երկու ծխախոտի համար հերիք կանի, կծխես:

— Վերցրո՛ւ,—իր կողքինին բոթելով՝ ափում եղածը խոթեց նրա ափի մեջ:

— Ի՞նչ է,—զարմացած հարցրեց կողքինը:

— Շաքարի ճակնդեղի մի կտոր, կուտես:

— Ա՛ռ:

— Ի՞նչ է:

— Թել ու ասեղ... պետք կգա:

— Վերցրո՛ւ...

— Ի՞նչ է...

— Սեմուշկա, կչրթես...

— Իսկ դո՞ւ...

— Սիրտս վկայում է, որ ես...

Բոլորն էլ ուզում էին ապրել, տեսնել պատերազմի ավարտը, իրենց ընտանիքները...

— Ես, քեռի՛ Միկոլա, ուզում եմ ապրել մորս համար: Իմ խեղճ մայրն ինձնից բացի ոչ ոք չունի:

— Գիտեմ, գիտեմ, Պյատրո՛ւս, տղա՛ս, բայց դու էլ գիտես, որ ես երկու երեխա ունեմ, եթե ես չվերադառնամ, նրանք որբ կմեծանան:

Համագյուղացիներ էին, միասին էին զորակոչվել, միասին կռվել կողք-կողքի, մի կաթսայից կերել:

— Իսկ ես սիրած աղջիկ ունեմ,— խոսեց էջմիածնեցի Մնացականը,— համոզված եմ, որ նա ինձ կսպասի՝ խոսք է տվել...

Գրեթե բոլորը կիսամերկ էին, ցնցոտիների մեջ, անթրաշ՝ մազակալած դեմքերով, ոմանք՝ ոտաբոբիկ, ոմանք կոշիկի փոխարեն չուլ ու փալաս էին փաթաթել ոտքերին:

Ամենից անհանգիստը Պյատրուսն էր: Նա շուտ-շուտ տեղը փոխում էր Միկոլայի հետ, վերջինս հնազանդորեն իր տեղը զիջում էր պատանուն:

— Այդպես ես ուզում, թող այդպես լինի,—հայրաբար ասում էր Միկոլան, ձեռքը թափ տալիս ու կանգնում Պյատրուսի կանգնած տեղը:

Քիչ անց, Պյատրուսը նորից փոխում էր տեղը... Ախ, նա ինչպե՜ս էր ուզում ապրել...

Իսկ ո՞վ չէր ուզում...

Գեներալը սկսեց անձամբ համրել մեկից տասը ու տասներորդի օձիքից բռնած դուրս քաշել շարքից: Իսկ զինվորները շարքից դուրս քաշածներին շարում էին առանձին, որպես մահապարտների: Գեներալը ամեն տասներորդին շարքից դուրս քաշելուց հետո, նորից սկսում էր հաշվել մեկից: Նա այսպես հաշվելով հասավ ինձ՝ «Ինը» ու ձեռքը պարզեց, որ կողքիս կանգնած Միկոլային դուրս քաշի շարքից, մեկ էլ շարքի գլխամասից ֆելդֆեբելը ձայն տվեց.

— Ներեցեք, պարո՛ն գեներալ...

— Ի՞նչ է,— գեներալը ինքնաբերաբար ձեռքը ետ քաշելով դարձավ ձայնի կողմը:

— Շարքի մեջ վիրավորներից մեկը ընկավ: Նա մեռած է:

Գեներալը մի երկու քայլ հեռանալով շարքից, հրամայեց.

— Շարքից հանվածները նորից կանգնեն իրենց տեղերում:

Շարքում մեռած գերուն դուրս քաշեցին ու նետեցին սպանվածների

մոտ։ Մահապարտները վերստին իրենց տեղերը վերադարձան։

— Զգա՛ստ,— հրամայեց գեներալը։

Շարքը իր նախկին տեսքը ստացավ։

Գեներալը նորից սկսեց մեկից տասը համրել ու տասներորդին դուրս քաշել շարքից։ Նա այնպես արագ-արագ էր համրում, ասես պիտի մեկնումեկը նորից խանգարի իր հաշիվը։ Գեներալը մինչև կհասներ Մնացականին, մեկ էլ Միկոլան արագ իր տեղը զիջեց Պյատրուսին։

— Դու չահել ես, ապրի՛ր, իմ մասին լուր կտանես իմ ընտանիքին։

Էսէսի զինվորը նկատեց այդ տեղափոխումը, արագ մոտեցավ ու խզակոթի մի հարվածով Միկոլային կանգնեցրեց իր նախկին տեղում։

Գեներալը համրելով հասավ Մնացականին ու մատը պարզած՝ ասաց ութը։ Միկոլան՝ ինը, ապա Պյատրուսի օձիքից ձիգ տալով, գոչեց՝ տասը և նրան ուղարկեց մահապարտների շարքը։

Ինն էին մահապարտները։

— Տանե՛լ,— հրամայեց գեներալն ու մատնացույց արեց, թե ուր...

Նրանք գլխիկոր քայլեցին։ Պյատրուսը գույնը գցած նայեց Միկոլայի կողմը, ասես ուզում էր ասել. «Քեռի Միկոլա, հիմա դու իմ մասին լուր կըտանես իմ հարազատներին»։ Միկոլան այդպես էլ հասկացավ։

Շարքը մի հիսուն քայլի վրա կանգնեց։ Լսվեց երկար կրակահերթ ու ինը անմեղ մարդ հնձված հասկերի պես փռվեցին գետնին։ Մի պահ շարքում կանգնածներին թվաց, թե այդ գնդակները անցան նաև իրենց միջով։

...Երեկոյան, ճամբարում գերիները իմացան, որ էսէսի լեյտենանտը երեկ երեկոյան, արևելյան ռազմաճակատից իր միակ որդու մահվան լուրն էր առել։

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ*



Հարգելի խմբագրություն, սովորում եմ 10-րդ դասարանում և ուզում եմ որոշ տեղեկություններ իմանալ իմ ընտրած ապագա մասնագիտության՝ մանկավարժության վերաբերյալ:

*ԱՂԱՍԻ ՄԽԻԹԱՐՅԱՆ*
*ՎՍՍՀ, Բոգդանովկայի շրջ., գ. Դիլիֆ*

# ՆՎԻՐՈՒՄ

Մանկավարժ դառնալու համար, իմ կարծիքով, երեք անհրաժեշտ պայման է պետք: Ամենից առաջ՝ սիրել երեխաներին: Առանց իսկական մարդկային մեծ սիրո, այդ ասպարեզը ոտք դնել չի կարելի: Չոր սրտի տեր, միայն աշխատանքային ժամերին իր պարտականությունները կատարող թեկուզև պարտաճանաչ պաշտոնյան լավ ուսուցիչ լինել չի կարող: Աշակերտը (և՛ լավը, և՛ վատը) պետք է լինի ուսուցչի հոգու մեջ, միշտ, ամենուրեք ստիպի մտածել իր մասին, գտնել այն ուղիները, որոնք այս կամ այն բնավորության տեր երեխային և պատանուն կյանքի ճիշտ ճանապարհին կկանգնեցնեն: Չէ՞ որ մարդկային հասարակության մեջ ամենից կարևորը, ամենից թանկը ինքը մարդն է, որի կամքից, համոզմունքներից, ազնվությունից ու մարդասիրությունից է կախված արդար հասարակության ստեղծումն ու պահպանումը: Իսկ այդ մարդը ձևավորվում, կոփվում ու հղկվում է գերազանցապես դպրոցում, մանկավարժների ձեռքի տակ:

Ասպարեզն ընտրելուց առաջ ստուգեցեք ձեզ՝ ընդունա՞կ եք դրան:

Երկրորդը՝ այն գիտության քաջատեղյակ լինելն է, որը դարձրել ես քո մասնագիտությունը և ավանդում ես դպրոցում: Պարզ է, որ օգտակար չես լինի դպրոցին, եթե մաթեմատիկա կամ պատմություն ես ավանդում, բայց ինքդ անփույթ ես այդ գիտության նկատմամբ, բավարարվում ես բուհում ձեռք բերածով, և հաստատուն քայլերով առաջ ընթացող գիտատեխնիկական հեղափոխությունն անցնում է քո կողքով, առանց հարստացնելու քո մասնագիտական միտքը: Ոչ ոք գուցե այնքան շուտ չի նկատում ուսուցչի մտքի սահմանափակությունը, որքան ուշիմ ու հետաքրքրասեր աշակերտը, որն ինքն էլ հետևում է մեր մամուլին, ռադիոյին ու հեռուստատեսությանը, վիթխարի ինֆորմացիա ստանում նրանց միջոցով:

Բայց միայն գիտությունն էլ բավական չէ: Ուսուցիչը պետք է կարողանա ամենաբարդ գիտական պրոբլեմները աշակերտների առաջ դնել մեթոդական այնպիսի հմտությամբ, որ նախ՝ հեշտացնի ըմբռնումը և ապա՝ օրըօրին աննկատելիորեն արթնացնի երեխաների հետաքրքրասիրությունը, զարգացնի նրանց տրամաբանությունը, մտածելու, որոնելու, եզրահանգումներ կատարելու կարողությունը: Դրա համար ապագա մանկավարժը պետք է ծանոթ լինի երեխայի հոգեբանությանը, ուսումնասիրի մեծ հոգեբանների աշխատությունները, առարկային վերաբերող մեթոդական գրականությունը՝ միշտ հարստացնելով այդ գիտելիքները սեփական փորձից բխող եզրակացություններով:

Կուզենայի ավելացնել մի չորրորդ պայման ևս. դպրոցում աշխատողը պետք է ընդհանրապես բարձր կուլտուրայի տեր մարդ լինի: Հակառակ դեպքում չի կարող վայելել աշակերտների հարգանքն ու սերը, չի կարող հեղինակություն լինել նրանց համար: Բազմակողմանիորեն զարգացած, հմուտ ուսուցիչը աշակերտների հետ միասին վայելում է գեղեցիկ ու նպատակաուղղված դասի հմայքը, երջանկանում աշակերտների շողացող ու խելամիտ աչքերի լույսով: Եվ ինչքան կարևոր է, որ անկախ նեղ մասնագիտությունից (ֆիզիկա, քիմիա, պատմություն և այլն), դասատուն գեղեցիկ խոսի մայրենի լեզվով, նրա հարստությունն ու ճկունությունը հաղորդի մատաղ սերնդին ոչ միայն լեզվի ու գրականության դասերին, այլև առերևույթ չոր թվացող ճշգրիտ գիտությունների ժամերին: Ակադեմիկոս Արտաշես Շահինյանին ուսանողները անսահման սիրում էին նաև այդ բարձր կուլտուրայի և հյութեղ ու գեղեցիկ լեզվի համար, թեև նա մաթեմատիկայի դասախոս էր:

*ՎԱՐՍԻԿ ԽՍԱՅԱՆ*
*ՀՍՍՀ վաստակավոր ուսուցիչ*

# ԻՍՊԱՆԱԿԱՆ ՀՈՒՄՈՐ



**ՈՒՍՈՒՑԻՉԸ** — Ո՞վ կարող է ասել. ի՞նչ է նշանակում զուգադիպություն:

**ԽՈՒԱՆԻՏԱ** — Զուգադիպությունն այն է, որ երկու տարբեր իրադարձություններ տեղի են ունենում միևնույն օրը:

**ՈՒՍՈՒՑԻՉ** — Ճիշտ է, կարո՞ղ ես մի օրինակ բերել:

**ԽՈՒԱՆԻՏԱ** — Իհարկե, օրինակ՝ իմ հայրը և մայրը ամուսնացել են միևնույն օրը:

●

**ԳԵՏԱՓԻՆ**

— Գիտե՞ս, ես այստեղից մի օր ձուկ բռնեցի, այնքան մեծ էր, որ մի քանի հոգով հազիվ տուն տարանք:

— Դա ի՞նչ է որ, ես անցյալ տարի մի ձուկ էի բռնել, այնքան մեծ էր, որ տանել չկարողացանք, լուսանկարեցինք, և միայն լուսանկարը հարյուր կիլոգրամ էր:

●

— Մայրի՛կ, ատամս ցավում է:

— Կոնֆետ շատ ուտելուց է:

— Բայց ես կոնֆետն ուտում եմ բոլոր ատամներով, ինչո՞ւ է միայն մի ատամս ցավում:

●

— Մայրի՛կ, հիշո՞ւմ ես, դու խոստացար ինձ թույլ տալ ամբողջ օրը խաղալ, եթե ես «չորս» ստանամ:

— Իհարկե, թույլ կտամ:

— Այդ դեպքում կարո՞ղ եմ ես մինչև օրվա կեսը խաղալ:

●

**ՆԱՎԱՍՏԻ** — Նավապե՛տ, կարելի՞ է արդյոք կորած համարել մի բան, երբ մեզ հայտնի է նրա տեղը:

**ՆԱՎԱՊԵՏ** — Իհարկե ոչ:

**ՆԱՎԱՍՏԻ** — Այդ դեպքում կարող եմ հանգիստ լինել, ձեր հեռադիտակը գտնվում է ծովի հատակում:

*Իսպաներենից թարգմ.՝ ՎԱՀԱՆ ՍԱՐԳՍՅԱՆԸ*

ԹԱԹՈՒԼ ԲՈԼՈՐՉՅԱՆ

## ՏՂԱՆ ԵՎ ԱԼԻՔԸ

Գանգո՛ւր տղա,
Այնպե՛ս լողա,
Ալիքը քեզ չգողանա,
Ալիքը բաց թևեր ունի,
Գերկլու շատ ձևեր ունի,
Նա կժպտա քո շուրթերին,
Քո այտերին
Ու աչքերին:
Մեկ էլ տեսար,
Համոզելով,
Քեզ իր ուզած
Խորքը տարավ:
Գանգո՛ւր տղա,
Այնպե՛ս լողա,
Ալիքը քեզ չգողանա:

## ՔԱՄԻ

Քամի՛, քամի՛,
Գարնա՛ն քամի,
Կանա՛չ քամի, ծի՛ր քամի,
Ծաղիկները արթնանում են,
Աղմուկ ու վեճ մի՛ անի:
Քամի՛, քամի՛
Ամռա՛ն քամի,
Քնքո՛ւշ քամի,
Ա՛լ քամի,
Կակաչների ծոցո՛ւմ քնիր,
Թերթիկները մի՛ տանի...

Քամի՛, քամի՛,
Աշնա՛ն քամի,
Դեղի՛ն քամի, չո՛ր քամի,
Ծառերն արդեն մերկանում են,
Տերևները մի՛ տանի:
Քամի՛, քամի՛,
Ձմռա՛ն քամի,
Ճերմա՛կ քամի,
Կո՛ւյր քամի,
Մեզ հերիք չէ՞ ցուրտն ու ձյունը,
Գոնե մրրի՛կ
Մի անի:

## ԾԻԾԵՌՆԱԿՆԵՐԸ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Հանդերն են բուրում դաղձ ու պուտով,
Սարի ճամփան է արդեն բացվել,
Այս գարնան կապույտ առավոտով
Ծիծեռնակներն են վերադարձել:

Նայում են նրանք մանուկներին
Մտերմորեն ու գգվանքով լի,
Եվ նորոգում են բները հին,
Որ ձագեր հանեն ամռանն էլի:

Երկինք ճախրելով երգ են մաղում,
Իրար ձայն տալիս արևի տակ,
Նրանք լեռնամոտ այս զով գյուղում
Դեռ չեն կորցրել և ոչ մի ձագ:

## ՄԵՂՈՒՆԵՐԻ ԵՐԳԸ

ՍԱՄՎԵԼ ՄԱՐԳԱՐՅԱՆ

Թռչենք խմբով, թռչենք երգով
Դեպի ծաղկազարդ հեռուն,
Ծաղկափոշով ու նեկտարով
Վերադառնանք նորից տուն:

Կանչում են մեզ սարերը սեգ
Ու դաշտերը ծաղկազարդ,
Ինչքան լա՜վ է, երբ միասին
Տուն ենք կրում բերքն առատ:

Մեր մի օրը շռայլ բերքով
Մեզ մի տարի է սնում,
Մենք ապրում ենք միայն երգով
Ու երգով էլ մահանում:




*Մ. ՍԱՐՅԱՆ — Ալեքսանդր Սպենդիարյանի դիմանկարը*

# ԵՍ ՏԵՍԵԼ ՈՒ ԼՍԵԼ ԵՄ ՆՐԱՆ

**20-ական թվականներին կոնսերվատորիան գտնվում էր Սպանդարյան փողոցի և Տերյանի անկյունում, այն ժամանակվա Երևանի լավագույն շենքերից մեկում (հիմա այդտեղ փիլիսոփայության ինստիտուտն է)։**

**Մեր քննությունը ընդունվում էր մեծ սենյակում, որը ուներ փողոցին նայող անկյունային կլորավուն պատշգամբ։ Ինչպես միշտ, այդ օրն էլ քննական հանձնաժողովը ներկայացնում էր դասատուական լրիվ կազմը։ Վերջապես հասավ իմ հերթը, դուռը բացվեց, լսեցի իմ ազգանունը։ Ներս մտա, բարևեցի բոլորին ու անմիջապես նկատեցի Ռոմանոս Մելիքյանին, որ նստած էր կենտրոնում։ Նրա մի կողքին իմ դասատուն՝ դաշնակահարուհի Աննա Մնացականյանն էր, մյուս կողքին՝ մեծանուն կոմպոզիտոր Ալեք-**

սանդր Սպենդիարյանը, որը բարի հայացքն ուղղելով ինձ, ժպտաց: Այդ ժպիտն ինձ համարձակություն ներշնչեց: Հարմարեցրի աթոռը, նստեցի և սկսեցի նվագել ծրագիրս՝ Բախի փոքր պրելյուդիան ու ֆուգան, Չերնիի երկու էտյուդը և Բեթհովենի՝ ֆա մաժոր սոնատինան: Ապա ինձ հարցրեցին, թե մի մաժոր գամման քանի նշան ունի, ես իսկույն պատասխանեցի:

Հետո չեմ հիշում որ դասատուն հարցրեց ինձ երաժշտության պատմությունից.

— Ասա՛ խնդրեմ, որտե՞ղ է ծնվել Բախը:

Առանց մտածելու վրա բերի.

— Բախը ծնվել է Բաքվում:

Այդ լսելով բոլորը քրքջացին:

Իսկ ես դուրս թռա սենյակից ու միջանցքում, լուսամուտին հենված՝ լաց եղա: Ընկերուհիներս հարցրին, թե ինչ է պատահել, ոչինչ չկարողացա պատասխանել: Այդ րոպեին այնքան հուզված էի, և գուցե քիչ էլ վիրավորված, ու դեռ չէի զգում իմ սըխալը (Ի. Ս. Բախը ծնվել է Գերմանիայում, Էյզենախ քաղաքում, 1685 թըվին, իսկ մահացել է Լայպցիգում 1750 թվին):

Քիչ անց քննական սենյակի դուռը բացվեց, դուրս եկավ և ինձ մոտեցավ, ի՞նչ եք կարծում ո՞վ. ինքը՝ Ալեքսանդր Սպենդիարյանը: Նա շոյեց գլուխս, ձեռքը դրեց ուսիս ու ասաց.

— Փոքրի՛կս, լաց մի՛ լինի, շտապում էիր, պատասխանեցիր առանց մտածելու, ոչինչ, դրա փոխարեն դու շատ լավ նվագեցիր, հանգստացի՛ր:

Նրա բարի վերաբերմունքը ինձ սփոփեց: Օրեր անցան, ու ես մոռացա այդ տհաճ դեպքը:

Բայց ահա մի անգամ փողոցում հանդիպում է ինձ Ալ. Սպենդիարյանի աղջիկը՝ Մարինան, և քրքջալով հարցնում է.

— Բախը որտե՞ղ է ծնվել, Բաքվո՞ւմ...

Եվ շարունակում է քրքջալ: Ես կարմըրում եմ, ամաչում ու լուռ հեռանում: Այդպես մի շարք անգամ, տարբեր տեղերում (համերգում, փողոցում, շուկայում), նա հիշեցնում էր ինձ այդ դեպքը և ինքը մեծ բավականությամբ քրքջում:

Մարինան այդ մասին ինձ հիշեցնում էր նաև Մոսկվայի կոնսերվատորիայում, երբ ես ուսանում էի, և անգամ 1971 թվին՝ Ալեքսանդր Սպենդիարյանի ծննդյան 100-ամյակին նըվիրված հանդիսավոր երեկոյի օրը, Մեծ թատրոնի դահլիճում:

Ըստ երևույթին Ալ. Սպենդիարյանը քննության ժամանակ ինձ հետ տեղի ունեցած միջադեպը պատմել էր տանը, չենթադրելով, որ իր չարաճճի աղջիկը կարող է ողջ կյանքում հիշել, հիշեցնել ինձ ու ամաչեցնել:

Մի փոքր դեպք ևս՝ կապված Ալ. Սպենդիարյանի հետ: 1927 թվին Երևան ժամանեց ամերիկյան հռչակավոր դաշնակահար Էգոն Պետրին: Մենք՝ կոնսերվատորիայի սաներս, թեպետ փոքր, բայց դաշնամուրային համերգներին, նույնիսկ երեկոյան հաճախ գնում էինք լսելու. մեզ թույլատրում էին, դա շատ անհրաժեշտ էր մեր երաժշտական զարգացման համար: Միակ համերգային դահլիճը Երևանում կուլտուրայի տանն էր, ներկայիս ֆիլհարմոնիայի փոքր դահլիճը, որը հրաշալի ակուստիկա ունի: Մենք հիացած էինք Էգոն Պետրիի արվեստով, մեծ տպավորություն թողեց մանավանդ նրա կատարողական տեխնիկան:

Էգոն Պետրին շատ բարձր հասակ ուներ, մոտ երկու մետր, շիկավուն էր, ժպիտը՝ հմայիչ, ակնոցներ էր կրում, ձեռքերը մեծ էին, մատները՝ երկար: Պարզ էր, այդպիսի ձեռքեր ունեցողի համար գոյություն չունեին տեխնիկական դժվարություններ: Մը-

բագիրը բազմազան էր ու հետա-քրքիր: Համերգն ավարտվեց խե-լահեղ ծափահարությունների տակ: Մենք, կոնսերվատորիայի ավագ ու կրտսեր ուսանողներս շտապ իջանք ցած, առաջին հարկ ու, սանդուղքների մոտ երկշարք կանգնած, սպասում էինք Էգոն Պետրիին, որպեսզի կրկին անգամ ծափահարենք վիրտուոզ դաշ-նակահարին:

Ահա և ջերմորեն զրուցելով վերե-վից իջնում են անչափ բարձրահասակ Էգոն Պետրին և մեր վտիտ, փոքրա-մարմին Ալ. Սպենդիարյանը: Մենք ոգևորված ծափահարում էինք: Երբ հավասարվեցին մեզ, մի պահ կանգնե-ցին, մեկ էլ Սպենդիարյանը նայեց մեր կողմը ու ինձ ձեռքով արավ, կան-չեց իրենց մոտ: Ես շփոթված մոտե-ցա: Բոլորովին անսպասելի Սպեն-դիարյանը ծանոթացրեց ինձ Էգոն Պետրիի հետ և այդ ժամանակ ինչ-որ բան ասաց նրան: Էգոն Պետրին ձեռքս սեղմեց ու ժպտալով մի քանի խոսք ասաց անգլերեն: Ալ. Սպենդիարյանը իսկույն թարգմանեց՝ նա ցանկացել է ինձ հաջողություններ երաժշտության ասպարեզում:

Սպենդիարյանն արդյոք դրանով չէ՞ր ուզում հատուցել իր չարաճճի Մարինայի՝ ինձ պատճառած ցավի դիմաց:

Շատ տարիներ են անցել, բայց հիշողությանս մեջ վառ մնացել է այդ մեծ հոգու տեր մարդու և մեծ երաժըշ-տի կերպարը:

Հիշում եմ նրան, դիրիժորական փայտիկը ձեռքին, պատվանդանի վրա կանգնած, հուզական, գեղեցիկ ու ո-գեշունչ շարժումներով, նա իր երաժըշ-տական կամքն ու զգացմունքները էր հաղորդում, իր ջանքերով կոնսերվա-տորիայի ուսանողներից կազմված Հայաստանի առաջին սիմֆոնիկ նվագախմբին, հնչեցնելով տարբեր կոմպոզիտորների և իր հոյակապ, ազգային մեղեդիներով լի սիմֆոնիկ գործերը:

Որքա՜ն բախտավոր եմ, որ տեսել ու լսել եմ նրան:

Ալեքսանդր Սպենդիարյանը 1924 թ. առաջիններից մեկն էր, որ արժանա-ցավ հանրապետության ժողովրդական արտիստի պատվավոր կոչմանը:

Նա առաջիններից մեկն էր, որ ջերմորեն ընդունեց Հայաստանի կա-ռավարության հրավերը, եկավ Երևան և իր եռանդուն մասնակցությունը բե-րեց հայրենի երաժշտական կուլտուրա-յի զարգացմանը, բարձր աստիճանի հասցրեց հայկական սիմֆոնիկ երա-ժըշտությունը իր ստեղծագործություն-ներով, իսկ նրա հռչակավոր «Ալ-մաստ» օպերան մտավ մեր դասական օպերաների շարքը:

Ափսոս, կարճատև եղավ Ալեք-սանդր Սպենդիարյանի գործունեու-թյունը Հայաստանում (1924—28 թթ.): Կարճատև, բայց և որքա՜ն բեղմնավոր:

*ՑՈՂԻԿ ԱՊՐԵՍՅԱՆ*

*դաշնակահարուհի*






ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 6 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Շապիկի առաջին էջին՝ «Ծաղրածու» — գործ՝ Աշոտ Մկրտչյանի, 10 տ., Երևան



ՎՖ 08252։ Պատվեր 694։ Տպաքանակ 52144։ Տպ. 3 մամ.։ Թուղթ՝ 70×90 1/16։ Հանձնված է արտադրության 25/IV 1980 թ.։ Ստորագրված է տպագրության 11/VI 1980 թ.։

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։

# ԺԱՄԱՆՑ




▲ Պարանի ո՞ր ծայրը քաշելու դեպքում կացինը կհարվածի կոճղին:

Գտեք լուսանկարվողների ստվերներում եղած սխալները: ▶



## ԽԱՉԲԱՌԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ (ՊԻՈՆԵՐ № 5)

### Հորիզոնական

3. Շիրակացի: 6. Սրինգ: 7. Արդուկ: 10. Կարմիր: 12. Արագած: 14. Ալիշան: 16. Արագոն: 17. Լաուրա: 18. Արաքս: 19. Աքաղաղ: 21. Նագասակի: 22. Իկարուս: 27. Սալոր: 28. Բրեստ: 31. Կակտուս: 32. Թատրոն: 33. Անանաս: 36. Պանամա: 38. Մողես: 39. Ուռկան: 40. Դինոզավր:

### Ուղղահայաց

1. Լրագիր: 2. Սահարա: 4. Արոր: 5. Բուրգ: 8. Էկրան: 9. Ածանց: 11. Մուշտակ: 13. «Արարատ»: 15. Նրանք: 16. Անապա: 20. Ղուկաս: 23. Կարաս: 24. Ուրբաթ: 25. Պլուտոն 26. Նեպտուն: 29. Մկրատ: 30 Գնդակ: 34. Աթոռ: 35. Սոսինձ: 36. Պտուտակ: 37. Ամառ

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԵՐԵԽԱՆԵՐԸ



ԱԼՎԱՐԴ ՎԱՐԴԱՆՅԱՆ, 9 տ., Երևան



ԳԱՅԱՆԵ ՎԱՐԴԱՆՅԱՆ, 12 տ., Երևան

ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐՅԱՆ, 11 տ., Մարտունու շրջ., գ. Զոլաքար

